# ՀԵՆՐԻԿԻ ԿԱՄՈՒՐՋԸ

(կրճատ)

ՆԻԿՈԼԱՅ ԳՈՄՈԼԿԱ

Ճանապարհը նեղ էր, ոլորապտույտ: Ավտոմեքենան ընթանում էր դանդաղ, շուտ-շուտ ցնցվելով անիվների տակ ընկնող գուղձերից և դուրս ցցված ծառարմատներից: Բայց դա ոչինչ. անտառով անցնելն էլ իր հաճույքն ուներ:

Նրանք վերադառնում էին որսից:

Ահա և Մոսկվա գետի առափնյա ծանծաղուտները: Դիմացի ճահճոտ ափին աճել են կարճահասակ ուռիներ: Ուռուտի վերևում, երկար շղթա կազմած, թռչում են վայրի բադերը: Նրանք չվում են դեպի տաք երկրներ:

Անտառակից այն կողմ երևում են մի քանի հին, մամռապատ կտուրներ: Մեքենայի հռնդյունը լսելուն պես, ճանապարհը կտրելով առաջ վազեց երեխաների բազմությունը:

— Ոտաբոբիկների հեծելազորը,— գլուխը թեքելով կատակեց վարորդը:

Կաշվե բաճկոնով որսորդը, որը միջին տարիքի, ամրակազմ տղամարդ էր, աչքերը կկոցելով ուղղեց վարորդին.

— Աշխարհի ամենագեղեցիկ հեծելազորը:

— Քեռիներ, ման ածեք մեզ,— ավտոմեքենայի աղմուկի միջից լսվում էին երեխաների բացականչությունները:

— Ընկեր Գիլ, կանգնեցրեք մեքենան. տղաներին պետք է մի քիչ ման ածել,— ասաց բաճկոնավորը և դառնալով դեպի մյուս որսորդը, ավելացրեց.— ճիշտ չեմ ասո՞ւմ, Իպատի՛չ:

Ավտոմեքենան կանգ առավ: Փոշու ոլորաձև ամպի միջից դուրս եկան երեխաները: Կաս-կարմիր կտրած ու շնչասպառ, նրանք շրջապատեցին մեքենան և հետաքրքրությունից վառվող աչքերով սկսեցին նայել Իպատիչ պապին ու անծանոթ որսորդին:

— Մինչև ո՞ւր տանենք, գուցե Մոսկվա՞:

— Թեկուզ մինչև կամուրջը: Հեռու չէ, քեռի:

— Նստե՛ք,— ասաց որսորդը և դուռը բացեց նրանց առջև:

Մի քանի վայրկյանում ամբողջ մեքենան լցվեց երեխաներով: Երջանիկ րոպեների հանդիսավորությունից նրանց աչքերը փայլում էին չարաճճիությամբ:

Ամենափոքրիկին, որը չինկահեր տղա էր, բաճկոնավոր որսորդը նստեցրեց իր ծնկներին: Տղան անհամարձակ էր, երկչոտ: Երբ մեքենան պոկվեց տեղից, նա կորցրեց հավասարակշռությունը և զույգ ձեռքերով փաթաթվեց որսորդի վզով: Իսկ սա, որ կարծես դրան էր սպասում, բռնեց փոքրիկի այտից և երկար ժամանակ բաց չէր թողնում:

Ճանապարհի երկայնքով ձգվում էին գորշ, ամայի դաշտեր: Տեղ-տեղ սևին էին տալիս աշնանացանի երկար շերտերը: Հեռվում, ոչ-բարձր կեչիների ծառուղուց այն կողմ, երևում էր Բարվիխա գյուղը: Ավտոմեքենան հանկարծ ծռվեց դեպի նոսր անտառակը և կանգ առավ:

— Էլի տարեք,— վարորդին ասաց որսորդը:— Տղաները արագաշարժ ոտքեր ունեն, վայրկենապես տուն կվազեն:

— Ի՛նձ ինչ, կտանեի, բայց հնարավոր չէ առաջ գնալ,— ասաց Գիլը և դուրս եկավ խցիկից:

— Իսկ ի՞նչ է պատահել:

— Կամուրջը քանդված է: Տեսնո՞ւմ եք, ծանր մեքենա է անցել վրայից:

Այ քեզ բա՜ն,— մոտենալով և կամուրջը զննելուց հետո հուզված ասաց որսորդը:

— Ինչ ես վշտանում: Կամուրջը կարելի է շրջանցել: Ձյուներ կպոկեք, կլցնեք փոսը, և խնդրե՛մ, անցիր՝ ինչքան կուզես,— խորհուրդ տվեց Իպատիչը:

— Իսկ կամուրջը քանդվա՞ծ պիտի մնա,— հարց-



ԱՊՐԻԼ
№ 4 1961 Թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
33-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

րեց որսորդը ուղիղ նայելով նրա դեմքին։— Ո՛չ, այդպես չենք անի։ Ժամանակ կա, և մենք կամուրջը կնորոգենք։ Հապա, սիրելի հեծելազոր,— նա իր մոտ կանչեց տղաներին։— Ո՞վ կարող է վազել տուն և կացին ու սղոց բերել։

Երեխաները շրջապատեցին որսորդին։

— Էդ կարելի է,— լուրջ կերպով ասաց ամենաբարձրահասակը, որ պեպենոտ երեսով տղա էր։



Նա հրամայաբար շարժեց գլուխը, և այդ նշանը բավական էր, որպեսզի բոլորը վազեն նրա հետևից։

Մինչև տղաները ետ կգային, վարորդը ջուր լցրեց մեքենայի մեջ, ստուգեց դողերը, ապա մոտեցավ որսորդներին։ Իպատիչը ծխում և ինչ-որ բան էր պատմում, իսկ զրուցակիցը ծիծաղից թուլացել էր։

Կես ժամ չանցած, ծառերի հետևից լսվեցին տղաների ձայները։

Իպատիչն ու Գիլը գործի անցան։ Նրանք վերցրին սղոցը և մոտեցան մի լաստենու։ Արձագանքը տարածվել էր անտառով մեկ։ Կամաց քչքչում էր առվակը, ինչ-որ տեղ ծլվլում էին ճնճղուկները։ Ամեն ինչ լավ էր, գեղեցիկ։

Բանկոնավոր որսորդը երկու ձեռքով բռնել էր լաստենուց և թեքում էր մի կողմի վրա, որ հեշտ սղոցվի։ Քիչ անց, լաստենին տապալվեց բացատի խոտերին։ Որսորդը գետնից վերցրեց կացինը և եռանդով սկսեց կտրել ճյուղերը։ Խուլ զրնգոցով կացինը դողում էր նրա ձեռքերում։ Երևում էր, որ որսորդը հաճելի զբաղմունք էր գտել։ Իպատիչն ու Գիլը, հետաքրքրությամբ նայելով նրան, հավաքում էին կտրված ճյուղերը և դիզում իրար վրա։

— Ահա և գերանը պատրաստ է,— ետ շրջվեց որսորդը։ Բերեք մյուսը։

Իպատիչն ու Գիլը մոտեցան կողքի լաստենուն։ Ծնկի եկան, թքոտեցին ափերը և սկսեցին նորից սղոցել։

Երբ չորս գերանն էլ պատրաստ էին, տաշեցին և դրեցին կամուրջի վրա։

— Բազրիքները փոքր են,— նկատեց որսորդը։— Իսկ ինչպիսի՞ն է կամուրջը, գիտության բոլոր կանոններին համապատասխա՞ն է արված։

Ոչինչ, մնացածը գյուղացիների հետ միասին ինքս կսարքեմ,— ասաց Իպատիչը։— Շնորհակալություն օգնության համար։

Որսորդը դարձավ դեպի խոսողը և անբավականությամբ կիտեց հոնքերը։

— Իսկ ո՞վ է իրականում օգնել։ Ե՞ս։— Նա գլխով արեց դեպի երեխաները։— Ահա թե ո՛ւմ պետք է շնորհակալություն հայտնել, Իպատիչ։ Հապա, սիրելի հեծելազոր, այստե՛ղ...

Տղաները մի ակնթարթում հայտնվեցին որսորդի մոտ: Սա առանց շտապելու մոտեցավ մեքենային, վերցրեց որսապարկը, այնտեղից հանեց մի ցախաքլոր և երկարեց պեպենոտ տղային, որի անունը Լեոն էր։

— Վերցրո՛ւ, տղաս, տար տուն, թող մայրդ տապակի։ Որսի միսը սոխով ու պղպեղով հիանալի է:

Տղան տատանվում էր։

— Դե, դե, ստիպում էր որսորդը։— Ուրեմն չե՞ս վերցնում։ Այդ դեպքում ասա, թե ի՞նչ ես ուզում դառնալ, երբ մեծանաս։

— Բոլշևիկ,—հաստատորեն ասաց Լեոնը։

Պատասխանը գնդակի պես կտրուկ էր և շատ դուր եկավ որսորդին:

— Իպատիչ, տեսնո՞ւմ եք թե ովքեր են կանգնած ձեր առջև։—Որսորդը ժպտաց և ձեռքով ցույց տվեց երեխաներին։ — Բոլշևիկնե՛ր։ Իսկ բոլշևիկները հիմա մեծ ուժ են։ Նրանք փոխում են աշխարհը և այնպիսի կյանք կկառուցեն, որ երազում էլ չենք տեսել։ Իսկ դա կլինի, Իպատիչ, անպայման կլինի։ Դե, ընկեր բոլշևիկ, վերցրո՛ւ, մի՛ հրաժարվիր։ Իր որսած ցախաքլորը նա նորից երկարեց տղային։—Եթե հրաժարվես, ո՛չ խոսքերիդ կհավատամ, ոչ էլ երազանքիդ։

Տղան ամաչում էր, բայց վերցրեց նվերը։ Որսորդը գոհունակությամբ խփեց տղայի ուսին և քայլեց դեպի ավտոմեքենան։ Երեխաները ապուշ կտրած նայում էին։ Որսորդ քեռու հետ մեքենա նստեց նաև Իպատիչ պապը։

Ավտոմեքենան դանդաղ առաջ շարժվեց։ Ահա անիվները գլորվում են նորոգված կամուրջի վրայով։ Շուտով մեքենան թեքվեց աջ, դեպի գորշ դաշտերը, որոնցից այն կողմ երևում էր Բարվիխան։ Երեխանները հիացած նայում էին նրանց հետևից:

Աննկատելիորեն իջնում էր երեկոն։ Գորշ երկնակամարը դարձել էր մութ-կապտագույն և նստում էր գետնին։

Հենց որ հեռվում խլացավ մեքենայի հռնդյունը, և նրանք ծածկվեցին բլրակի հետևը, տղաները ետ շրջվեցին:

— Ինչո՞ւ չէիր վերցնում ցախաքլորը,—հանկարծ Լեոնին հարցրեց թմփլիկ թշերով Նիկիտկան։ —Ես գիտեմ, որ ամեն օր ցամաք հաց եք ուտում։

— Հը՛մ։ Ինչո՞ւ չէիր վերցնում։ Ասելը հեշտ է,—երազկոտ արտասանեց Լեոնը և, հայացքը կտրելով ճանապարհից, ավելացրեց։ —Ինչպե՞ս կարող էի վերցնել։ Չէ՞ որ նա հենց ինքը Լենինն էր...

Անսպասելի պատասխանից տղաները նույնիսկ ցնցվեցին: Նիկիտկայի աչքերը դարձան ավելի խոշոր, տարակուսանքով լի։

— Ինչ ես ասում, է՛։

— Այ քեզ դմբոնն՛ր,—Լեոնը ուրախացավ, որ իր ասածը այդպես ուժեղ տպավորություն թողեց։— Լենինն էր... Սկզբում ես, իհարկե, չճանաչեցի։ Իսկ հետո, երբ կացինը ետ վերադարձրեց, նայեցի աչքերին և զարմացա. Սա ի՞նչ բան է. ծանոթ դեմք է, ծանոթ աչքեր են։ Եվ միայն վերջում, երբ նա խոսում էր մեզ հետ, նոր միայն հիշեցի, որ ինքը Լենինն է, իսկական Լենինը։ Նկարը մեր դպրոցում կա, տեսե՞լ եք։

Երեխաները աղմկում և անհանգիստ շարժումներ էին անում։

— Լենի՛նը...

— Մի՞թե Լենինն էր։ Իսկ ինչո՞ւ էր հրացանով եկել այստեղ։

— Ինչ կա որ,—սկսեց բացատրել Լեոնը։— Գուցե եկել էր ստուգելու, թե առանց թույլտվության արդյո՞ք չեն կտրում անտառը։ Ի՜նչ հոգատար մարդ է, է՛։

— Մեր կամուրջն էլ նորոգեց։ Լենի՜ն,—հիացմունքով ասաց Նիկիտկան։

Երեխաները մոտեցան առվակին ու կանգ առան։

Մեծ հետաքրքրությամբ նրանք նայում էին նորոգված կամուրջին, ասես առաջին անգամ էին տեսնում։ Այժմ նրանց պատկերանում էր այն ոչ թե որպես սովորական մի կամուրջ, այլ մի շենք, որ տանում է ինչ-որ անսովոր աշխարհ ուր նրանցից յուրաքանչյուրին այնքա՜ն շատ կուզենար մտնել։

*Թարգմ. Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ*



Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ



## ԺԱՄԱՊԱՀ ԱՐԱԳԻԼՆԵՐԸ

ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆ

Արագիլներն այսօր եկան,
Գարունն առած իրենց թևին
Ու թառեցին հայրենական
Երկնասլաց բարդիներին։

Նրանց ճամփան շատ է երկար,
Նրանք գալիս են Կիպրոսից,
Անգամ կղզուց Մադագասկար
Ու հեռավոր Եգիպտոսից։

Սակայն երբեք չեն ուշանում.
Ամեն տարի մարտի իննին
Հեռուներից վերադառնում
Ու թառում են իրենց բնին։

Չէ, օրացույց չունեն նրանք,
Ժամացույց էլ չկա օդում,
Բայց, ա՜յ հրաշք, ա՜յ քեզ զարմանք,
Օրն ու ժամը չեն շփոթում։

Թեկուզ ճամփին շաչի քամին,
Եվ որոտա ամպը գարնան,
Շտապում են որ ճիշտ ժամին
Բներն իրենց վերադառնան։

Իսկ մեր Գագիկն, ամո՜թ, ամո՜թ,
Ապրում է հենց դպրոցի մոտ,
Բայց չի եղել մի օր, որ նա
Ժամանակին դասի գնա։

# ԱՆՍՊԱՍԵԼԻՆ

ԱԶԱՏ ՇԱՀԻՆՅԱՆ

Նա դուրս եկավ իրենց բակից և գնացքից ուշացած մարդու փութկոտությամբ սկսեց ցած իջնել փողոցով։ «Ո՞վ գիտի, մեկ էլ տեսար նորից ցրցվեց կողքիդ, դե արի ու մինչև դպրոց քայլիր միասին...»

Երբեք Վանիկը այդքան ընկճված չէր զգացել իրեն, ինչպես այն օրը, երբ մաթեմատիկայի ուսուցչուհին կանչեց գրատախտակի մոտ և դասը հարցնելուց հետո, ուղղակի ասաց.

— Վանիկ, ինչպես տեսնում եմ, դու դժվարանում ես մենակ պարապել։ Ա՛յ, մենք կխնդրենք Համիկին և նա քեզ կօգնի...

Այդ ամենը այնպես միանգամից, այնպես անսպասելի կատարվեց, որ Վանիկը չհասցրեց առարկել, իսկ երբ դասամիջոցին, ամբողջ դասարանի տղաների մոտ Համիկը մոտեցավ ու հարցրեց իրեն, թե երբվանից են սկսելու պարապել, նա ամոթից քիչ մնաց գետինը մտներ։ Կատակ բան հո չէր... Մեկ էլ տեսար տղաները կսկսեն ամբողջ դպրոցով մեկ ծաղրել ու ծիծաղել իր վրա։ «Սրան տեսեք, աղջկա հետ է ընկերություն անում... Դասերը չի կարողանում ինքնուրույն պատրաստել, հույսը դրել է աղջիկների վրա...» Այո, այս անպայման կսկսեին ծաղրել և ամենից շատ այդ Վազիկը։ Դե բոլոր տղաներն էլ նրա պոչից են կպած... Իսկ Վազիկը գուցե տանել չի կարող նրան, ով աղջկա հետ է ընկերություն անում։ Ճիշտ է, ինքն առաջին տարին է սովորում այդ դպրոցում և ինչպես հարկն է դեռ չի մտերմացել Վազիկի ու մյուս տղաների հետ, բայց դե շատ լավ է ճանաչում նրանց...

Այս մտքերով տարված նա դեռ նոր էր մտնելու փողոցի խաչմերուկին, երբ հետևից լսվեց Համիկի ձայնը.

— Սպասի՛ր, Վանիկ...

Թեև Վանիկի համար մեռնելու չափ դժվար էր կանգնել, սպասել նրան, բայց այնուամենայնիվ նա մի հայացք գցեց շուրջն ու կանգնեց։

— Սպասիր միասին գնանք։

— Շտապում եմ...

— Ինչո՞ւ ես շտապում. զանգը տալուն դեռ բավական ժամանակ կա։

— Ես... Դե ես կարևոր գործ ունեմ դրա համար... Եվ՝ հետո...

«Եվ հետո ի՞նչ ես պոչիցս կպել...» ուզում էր ասել, բայց լռեց, լռեց ու սկսեց դանդաղ քայլել:

Նրանք ցած իջան փողոց: Վանիկը քայլում էր գլուխը կախ: Նա երբեմն գողունի հայացքով շուրջն էր նայում, թե արդյոք իրենց դասարանի տղաներից մեկն ու մեկը չի՞ նկատում իրենց: Ախր այդ Համբիկը ինչպես չի հասկանում, որ նա աղջիկ է, ուրեմն պետք է աղջիկների հետ ընկերություն անի և ոչ թե տղաների... Ճիշտն ասած Համբիկը վատը չէ. ընդհակառակը նա չափից ավելի բարի ու հոգատար է ընկերոջ նկատմամբ: Եվ հետո դասարանի ամենալավ սովորողը նա է: Բայց չէ՞ որ նա աղջիկ է... Ա՜յ, եթե տղա լիներ, ուրիշ բան... Նա ոչ մի րոպե չէր անջատվի նրանից և ընկերություն կաներ ինչպես պետքն է, իսկ աղջկա հետ...

— Վանիկ, երեկ ինչո՞ւ չեկար պարապելու,— լռությունը ընդհատելով հարցրեց Համբիկը,— պայմանավորվեցինք, բայց դու այդպես էլ չեկար:

— Կարևոր գործ ունեի: Եվ հետո իմացած եղիր, որ ես աղջիկների օգնության կարիքը չեմ զգում:

Համբիկը այս խոսքի վրա բոլորովին շփոթվեց ու ոչինչ ասել չկարողացավ:



Իսկ Վանիկը, որ այդ պահին զանազան մտքերի մեջ ընկած ելք էր որոնում նրա անտանելի ներկայությունից մի կերպ ազատվելու համար, ինչ-որ բանից հանկարծակի եկած կանգ առավ:

Իրենց հետևից, մայթով ցած էին իջնում հարևան դասարանցի մի քանի տղա: Եվ որպեսզի նրանք չտեսնեին իրեն աղջկա հետ քայլելիս, ուստի՝ նա արագությամբ պոկվեց տեղից, վազեց փողոցով ցած սլացող տրամվայի հետևից և հասնելով վերջին վագոնին՝ մեծ դժվարությամբ ցատկեց հարթակի վրա ու հեռացավ:

Մայթի եզրին կանգնել էր Համբիկը վիրավորված ինքնասիրությունից խեղդող զայրույթն աչքերում:

Իսկ հաջորդ օրը կատարվեց անսպասելին...

* * *



Կիրակի օր էր:

Վանիկը քաշված սենյակի մի անկյունում, երկրաչափության դասագիրքն ու տետրը առջևը դրած համառորեն պարապում էր: Թող որ Համբիկը չկարծի, թե ինքը այնքան ըթամիտ է, որ նույնիսկ աղջկա օգնությամբ դաս պատրաստի: Եվ նա լարված գծում էր ու ջնջում, գծում էր ու ջնջում, բայց ոչ մի կերպ չէր կարողանում երկրաչափական այդ պարզ խնդիրը վճռել: Ի վերջո այս ամենից ձանձրացած նա ցած դրեց գրիչն ու ոտքի ելավ:

Ավելի լավ է Վազիկենց տուն գնա: Ճիշտ է, թեպետ նա էլ մի քիչ կաղում է երկրաչափությունից, բայց դե իրենից լավ գիտի: Եվ հետո տղայի հետ պարապելը անհարմար չէ...

Այս մտքից ոգևորված նա սեղանի վրայից արագ հավաքեց գրքերն ու տետրերը և շտապով դուրս եկավ:

— Վազիկը տա՞նն է, մորաքույր...

— Չէ՛, տղաս,— պատասխանեց Վազիկի մայրը:

— Իսկ ո՞ւր է գնացել, չգիտե՞ք:

— Համբիկենց տուն գնաց: Երկրաչափության խնդիրը դժվարացավ վճռել, գնաց, որ Համբիկն օգնի իրեն:

Վանիկը չհավատաց իր լսածին:

— Ճի՞շտ եք ասում, մորաքույր...



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

— Իսկ ի՞նչ է, պայմանավորվել էիր միասին պարապել, այո՞,— հարցրեց մայրը:

— Ոչ, մորաքույր... Ես հենց այնպես...— կմկմաց Վանիկը և արագ դուրս եկավ նրանց տնից:

«Ո՛չ, ո՛չ, չի կարող պատահել... Վազիկը այն տղաներից չի, որ աղջկա հետ ընկերություն անի...» մտածում էր նա ճանապարհին և կծկածը սառչելու համար քայլերն ուղղեց Համլիկենց տուն և սեղմեց զանգի կոճակը:

— Վազիկը ձեզ մո՞տ է:

— Մեզ մոտ էր,— պատասխանեց Համլիկի քույրը,— բայց քիչ առաջ գնացին...

— Իսկ Համլի՞կը:

— Համլիկի հետ գնացին: Դասերը պարապեցին ու հետո գնացին կինո:

Վանիկը հեռացավ այդտեղից ընկճված ու փշրված հոգով: Ահա թե ինչ... Ուրեմն Վազիկը առանց կաշկանդվելու խնդրում է Համլիկին, որ օգնի իրեն, պարապում են դասերը ու հետո միասին կինո գնում, մինչդեռ ինքը թողեց նրան փողոցի մեջտեղում ու առանց ամաչելու փախավ: Նույնիսկ տրամվայով փախավ: Ահա թե ինչպիսին է ինքը...

Եվ նա բարկացած ոտքով խփեց առջևը ընկած փոքրիկ խճաքարին, որը գլորվեց ու ընկավ ցեխոտ ջրափոսի մեջ:

# ԼԵՆԻՆԸ

ՆԻՆԱ ՓԱԼԱՄԱՐՉՈՒԿ

Երբ փոքր էի դեռ՝ չորս-հինգ տարեկան
Եվ կյանքում ոչինչ չէի հասկանում,
Մայրս՝ հուշերիս առաջին վկան,
Ինձ նրա մասին հեքիաթ էր պատմում:

Ու տեսնում էի նրան երազում,
Մի հսկա-հսկա՝ վիթխարի մարդու,
Որը ցարի դեմ որպես դյուցազուն,
Կռիվ էր մղում և նրան հաղթում:

Բայց երբ որ հետո ես քիչ մեծացա,
Եվ մայրս մի օր բռնած իմ ձեռքից,
Ինձ դպրոց տարավ... Ես ծանոթացա,
Արդեն իմացա նրան մոտիկից:

Նա ոչ սուր ուներ ու ոչ հրացան,
Ոչ էլ փառահեղ կեցվածք զինվորի.
Սիրեցի նրան և մտերմացա
Հավատով խորին...

Ու դեռ պահում եմ գիրքն այն խունացած,
Որի էջերից առաջին անգամ
Ժպտացել է ինձ օրերում անցած,
Նա իր ժպիտով ջերմ ու հայրական:

Եվ մինչև այսօր տանը թե դրսում,
Ուր էլ որ լինեմ կյանքում, ամեն ժամ,
Որպես բարեկամ և հայր սիրասուն,
Շրջում է ինձ հետ Լենինն անբաժան:

Թարգմ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

ՀԱՄՈ ՍԱՀՅԱՆ

## ՄԱՅՐԱՄՈՒՏԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ

Դուք տեսնո՞ւմ եք, թե ինչ է կատարվում.
Արեգակն իջել, փարվում է սարին,
Սարի ստվերը ձայրին է փարվում,
Ձայրի ստվերը փարվում է ծառին,
Ծառի ստվերը գետի հետ գնում,
Գլուխը հովտի կրծքին է դնում...
Այսպես երկարում, հովտի երկայնքով,
Բոլոր ստվերներն իրար են փարվում
Եվ հյուսում են մի հրաշք երեկո...
Դուք տեսնո՞ւմ եք, թե ինչ է կատարվում։

## ԱՄՊԵՐ

Ո՞ր կողմերից եք խաղալով գալիս,
Ի՞նչ եք մտածում, ամպեր իմ հիմար.
Քամին ծեզ վրա մատ է թափ տալիս,
Է՛հ, ուշացել եք, կծեգի հիմա։
Կբոնի հիմա, հարց ու փորձ կանի
Եվ պատառ-պատառ կտանի հեռու,
Ու՛ր որ կամենա՝ կառնի, կտանի.
— Դե. գնացե՛ք ու գտեք իրարու...

## ԼԵՌԱ՛Ն ԼՃԱԿԻ՛Ն

ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Աղմուկ ու երգ
Գիշեր-ցերեկ,
Ո՞վ է քարեր գլորում.
Հանաք բան չի,
Լեռան լանջին
Մարդիկ ջրանցք են փորում։
Ամռան շոգին
Դաշտ ու այգի
Ջրով պիտի հագենան,
Առատ բերքով,
Քաղցր մրգով
Լցնեն պահեստ ու մառան։

## ԱՌՈՒ՛Ն ՈՒ ԾՈՎԸ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԻՐԱԶ

Առուն մինչև ծովը հասավ՝
— Շունչս կտրեց, ծովին ասավ.
Մինչև հասա շնչակտուր,
Տե՛ս, մնացի հազիվ մի բուռ.
Արևն ընկած իմ հետևից՝
Կուզեր կուլ տալ հուր ծարավից։
Դու ինչի՞ց է, որ չես վախում,
Արևի տակ չես նվաղում.

Այս ինչի՞ց է, մայր իմ ծովակ,
Չես ցամաքում արևի տակ։
— Այդ նրանից, որ բյուր եմ ես,
Որ մենակ չեմ, նման չեմ քեզ.
Հազար ու բյուր քեզ պես առվակ,
Ունեմ իմ մեջ, իմ կրծքի տակ.
Անթիվ ջրեր՝ մենք միացել
Անհաղթելի ծով ենք դարձել։

# ՍԱՇԻՆ ԱՂԲՅՈՒՐԻ ԱԿՈՒՆՔՈՒՄ

ԱՆԱՀԻՏ ՍԵԿՈՅԱՆ

Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ

Մի կախարդական աշխարհում է գտնվում Ծավ գյուղը։ Չորս կողմից նա շրջապատված է անանցանելի անտառներով, որտեղ գիշերը դուրս են գալիս արջը, գայլը, վայրի վարազը և շատ ու շատ այլ կենդանիներ։ Իհարկե, պատահում է նաև, որ արջը գիշերը հասնում է կոլտնտեսության բանջարանոցներն ու արմատահան անում կանաչ լոբին կամ եգիպտացորենը, երբեմն վարազը քանդում-հանում է կարտոֆիլը, իսկ աղվեսը, որ երես առած է ու ճարպիկ, նույնիսկ ցերեկը սողոսկում է թռչնանոցը ու սկսում կոտորել հավերին։ Այդ ժամանակ միայն պահակը, գողին հանցանքի վայրում բռնելով՝ հրացանով խփում է։

Ծավում չկա մի երեխա, որ ցանկանա և վաղ լուսաբացին չտեսնի կխտարի մի ամբողջ խմբի՝ Սաշին աղբյուրից ջուր խմելիս, որ թաքնվի մի հարմար տեղ և չտեսնի արջին իր քոթոթների հետ խաղալիս կամ նրանց ծառ բարձրանալ սովորեցնելիս։ Իսկ թե ինչքան մոշահավ է թռչում մոտակա թփուտներից, դժվար է պատկերացնել։

Այժմ ես ուզում եմ պատմել, թե անցյալ տարի աշնանամուտին ինչ պատահեց մի անգամ Սաշին աղբյուրի մոտ։

Սարից նոր իջած նախիրը սովորաբար մինչև ձյան դնելն արածում է անտառում։ Գիրացած հորթուկները վազվզում են մոշի թփուտների մեջ, ախորժակով ուտում են համով-հոտով կանաչը կամ նստում մի ստվերի տակ ու որոճում։ Տասը հորթուկի խնամքն իր վրա էր վերցրել հինգերորդ դասարանցի Սուրիկը։ Հացն ու պանիրը գրքերի հետ նա կապում էր թաշկինակի մեջ, կախում մահակի գլխին և հորթերն առաջն առած՝ մտնում անտառ։ Սուրիկը շատ անվախ տղա է, անտառի բոլոր անկյուններում եղել է ու գիտե, որ ցերեկն այնտեղ ամեն ինչ անշարժանում է, գազանները պատսպարվում են, կխտարներն ու վայրի այծերը տեղներում որոճում են կամ քնում։

Սուրիկը շատ էր սիրում թափառել հատկապես Սաշին աղբյուրի մոտերքը։ Հորթերին թողնում էր թփերի մեջ, ինքը հանում գրքերն ու պատրաստում դասերը։ Հոգնելուց հետո մեջտեղ էր հանում հացն ու պանիրը, ուտում էր և խմում Սաշին աղբյուրի ջուրը։ Այդ աղբյուրը կառուցել է ծավեցի Սաշան, և համագյուղացիները նրա պատվին ասում են Սաշին աղբյուր։ Ի՜նչ ջուր, ի՜նչ ջուր, խմում է մարդ անընդհատ, խմում ու չի հագենում։ Գազաններն էլ են գալիս այդտեղից ջուր խմելու՝ աղբյուրի շուրջը թողնելով իրենց ոտնահետքերը։

Եվ ահա մի անգամ էլ, երբ Սուրիկը փաթաթում է գրքերը, հավաքում հորթերին գյուղ տանելու, տեսնում է, որ հորթերից մեկը չկա՝ Չալիկն է կորած լինում։ Սուրիկը վազում է այս ու այն կողմ, ձայն տալիս, փնտրում, կանչում՝ ո՛չ մի Չալիկ։ Գալիս են նաև Սուրիկի ընկերները, փնտրում են մոշի թփուտների մեջ, դարավոր ծառերի արանքները, որոնք վաղուց տապալվել են ու սկսել փտել,— փնտրում են ու... ո՛չ մի հորթ։ Միթե՞ գազաններն են հոշոտել։

— Սա գայլի գործ է,— իր վերջնական որոշումն է հայտնում Հակոբը։

Բայց ցերեկով ե՞րբ է գայլ երևում, այն էլ տաք եղանակին։

Երեխաները փնտրում են այնքան, մինչև մայրամուտը շիկնում է, և անտառը մթնում։

Հաջորդ օրը մի քանի փորձված անտառապահներ թափառում, տակն ու վրա են անում ողջ անտառը, բայց ոչ հորթն են գտնում, ոչ էլ նրա ոսկորները։ Երկար են փնտրում, բայց վերջը՝ այդպես էլ մոռանում են Չալիկին։

Անցնում է երկու շաբաթ։

Անտառից մի օր փայտ բերելիս՝ Սուրիկն ու իր հայրը որոշում են հանգիստ առնել Սաշին աղբյուրի մոտ։ Հին սովորություն է՝ ծավեցիներն անտառի հետ կապված ամեն մի աշխատանքի համար միշտ այդ աղբյուրի մոտից անցնող կածանն են ընտրում, որպեսզի մի քիչ նստեն, շունչ



առնեն, մի երկու բուռ ջուր խմեն ու նոր շարունակեն ճանապարհը:

Սուրիկի մտքից չի հեռանում կորած հորթն իր գեղեցիկ, չալ ճակատով: Հայացքը զուլալ ջրին՝ նա հիշում է այն անհաջող օրն իր մանրամասնություններով:

— Հայրի՛կ, մի ջրին նայիր,— աչքերը լայն բացած՝ ասում է Սուրիկը.— Անձրև վաղուց չի եկել, ջուրն էս ինչի՞ է պղտորվում:

Հայրը նայում է ջրին ու զարմանում. անսովոր կեղտոտ հետքեր են երևում: Ելնում է տեղից, նայում ջրի ակունքի կողմը, մի երկու քայլ անում դեպի այն փոքր թունելը, որտեղից գալիս է ջուրը. ոչինչ չկա: Բոլորը գիտեն, որ հեռատես Սաշան ջրի վրա լեռ քարերից թունել է կապել մի քանի տասնյակ մետր, մինչև ջրի ակունքը, որպեսզի ջուրը մաքուր մնա, որ գազանները չքանդեն, չփչրեն ակը: Մարդ կարող է հասնել ակունքին, եթե կուզեկուզ գնա՝ ոտքերը դրած առվակի երկու ափերին:



Սուրիկի հայրը վառում է լուցկին ու մի քիչ առաջանում. ոչինչ չի երևում: Գնում է էլի, գընում է այնքան, մինչև կպչում է դիմացի պատին: Ոչ, սա պատ չէ: Վառելով լուցկին՝ նա վախեցած տնտղում է դիմացը. ցցված ոսկորների միջից մի բարակ պոչ է երևում: Շոշափում է: Ա՛յ քեզ բան. մի հորթ է, որ աղբյուրի միջով եկել, եկել է ու խրվել և որովհետև շրջվելու տեղ չկա թունելում, իսկ կենդանին այնքան անհասկացող է, որ չի կարողացել ետ-ետ գնալ, մնացել է ակունքում կաղապարված:

Սուրիկի հայրը բռնում է հորթի պոչից ու ետ-ետ գալիս: Հեռվից լսում է Սուրիկի կանչը: Վերջապես նրանց հաջողվում է լույս աշխարհ դուրս գալ: Երկար լաց եղած Սուրիկին հանգստացնում է միայն հորթի հայտնվելը: Խեղճացած կենդանին ուժեղ լույսից կծկվում, փակում է աչքերն ու տապալվում գետնին:

— Վա՜յ, Չալիկն է,— վրա է պրծնում Սուրիկը՝ համբուրելով նրա ճակատը:

— Ո՞նց է երկու շաբաթ դիմացել,— տարակուսում է հայրը:— Ասենք սարից նոր էր եկել ու այսքան ժամանակ ապրել է սեփական ճարպի ու մաշ գնով: Մի նայիր, տես, կաշին ու ոսկորն են մնացել: Եթե չգտնեինք, շատ-շատ ապրեր՝ երկու օր:

Ուրախությունից իրեն կորցրած Սուրիկը լուրն իսկույն գյուղ է հասցնում: Քիչ հետո Ծալի բոլոր երեխաները վազում են Սաշին աղբյուր, շըրջապատում ուժակորույս հորթուկին: Շուտով նրանք մի պատգարակ են պատրաստում, հորթուկին մեջը դնում և հանդիսավոր կերպով հասցնում գյուղ:

## ԱՂԲՅՈՒՐ

ԳՐԻԳՈՐ ՍԱՋՄԱՆՅԱՆ

Մարդ կա, քեզ բարի օրհնանք է ասում,
Մարդ կա՝ պղտորում հատակդ վճիտ.
Ոչ մի օրհնանքի դու չես սպասում,
Միայն բարին է հոսում քո խղճից:

Աղբյո՛ւր, դու հողի կաթն ես մայրական,
Ծարավ դաշտերին դու կյանք ես տալիս.
Նրա համար ես դու անուշ այդքան,
Որ իմ հայրենի հողից ես գալիս:




ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*(Նվիրում եմ Թալինի շրջանի)*
*պիոներներին*

Նախագահին մեջտեղ առան
Պիոներները Թալինի.
— Հո՛ղ,—կանչեցին միաբերան,—
Ինչ ուզում է, թո՛ղ լինի...

Ու նեղել են ամբողջ տարին,
Ո՜նց են պատին կպցրել.
— Մեր շրջանը քարոտ Թալին,
Որտեղի՞ց հող, ա՛յ ծոեր...

Հող չէ, բայց քար ինչքան ուզեք,—
Ասում է նա կեսկատակ,—
Արձակուրդ է, հանգստացեք,
Եկող տարի կստանաք:

— Հո՛ղ,—կանչում են միաբերան,—
Միշտ ասում ես գալ տարի.
Տու՛ր, թող լինի քար ու ղռան,
Խոստացել ես, կատարի՛ր:

Էլ ճար չկա, նախագահը
Գործը ուզեց տանել հաշտ.
Գլուխն անցած պիոներների,
Տարավ նրանց դեպի դաշտ:

Դպրոցի մոտ, ձորից այն կողմ,
Ուր ժայռուտն է Թալինի.
Կանգնեց, ասաց.—Դե, է՛ս էլ հող
Ինչքան մաքրեք, ձեզ լինի...

Թնդաց ուռան, զվարթ ուռան,
Բահ ու քլունգ շողացին,
Պիոներներ, հինգ դասարան,
Քարերն անգամ դողացին...

Հակառակող նախագահն էլ
Բերեց քարհանն մեքենան.
Որ օգնում ես, պիտի օգնել,
Կարգին լինի ամեն բան...

Գործի կպան և ո՜նց կպան.
Պիոներներ, խուքի տեր.
Էլ ի՞նչ քարեր, կամ ի՞նչ խոպան,
Սևահող է, սերմը բե՛ր...

Աչքիդ առաջ քարերն ահա
Հետզհետե նահանջում,
Ծանրությունից ազատվելով
Հողի սիրտն է կանաչում:

Դե եկ, հիմա գնանք Թալին,
Աչքովդ տես, կիմանաս,
Նախագահը քեզ կտանի
Պիոներական հողամաս:



Նկ. ԼԻԱՆՆԱ ԱԽՅԱՆԻ

Պարիսպի տեղ, բարդիներ են,
Հեռվից կանչող բարդիներ.
Մարգերն այնպես դալարել են,
Թեկուզ քիչ է բերքը դեռ:

Արարատյան դաշտից պոկվել,
Հյուր է եկել մի կտոր
Ու Թալին է կարծես բերել
Մրգերն համով ու հոտով:

Կա՛մք եմ ասել, ա՜յ, ձեռք ու խելք,
Խաղող՝ Խարջի, դեղձ՝ Դվին.
Նախանձելի գործ է, տղե՛րք,
Արժե, որ ձեզ հող տվին:

# Կրկեսը Լուսնի վրա

(Գիտաֆանտաստիկական պատմվածք)

ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

— Դե՞,—ճաշից հետո ասաց հայրիկը:—Գնա՞նք:

— Գնա՛նք... գնա՛նք...

Քնարիկն ու Արամիկը ուրախությունից սկսեցին թռչկոտել: Նրանք արդեն մի քանի օր է, ինչ Լուսնի վրա էին: Ապրում էին մի զարմանալի քաղաքում, որը մի մեծ, փուչիկի պես կտուր ուներ:

Կտուրով քաղաք... Հայրիկը պատմում էր, որ այստեղ, Լուսնի վրա օդ չկա: Այդ պատճառով էլ քաղաքը ծածկել են կտուրով, որպեսզի ներսի օդը դուրս չփախչի: Իսկ մնացածը ճիշտ այնպես էր, ինչպես Երկրում: Լայն-լայն փողոցներ, բարձր-բարձր շենքեր, մանկական այգիներ... Բայց ամենից հետաքրքիրը այստեղի կրկեսներն էին, որ երեխաները դեռ չէին տեսել: Քնարիկը վաղուց գիտեր, որ Լուսնի վրա կրկեսներ էլ կան: Իսկ նա կրկես գնալ շատ էր սիրում: Երբ նա Լուսին թռչելուց մեկ օր առաջ Արամիկին այդ մասին ասաց, Արամիկը շատ զարմացավ: Դե, Արամիկը շատ փոքր է ու չի հասկանում, որ մութ երկնքում փայլող Լուսինն էլ մի մեծ աշխարհ է, ուր մարդիկ են ապրում, ուր քաղաքներ կան, իսկ այդ քաղաքներում էլ կրկեսներ...

Հայրիկի հետ Լուսին գալուն պես՝ Քնարիկը խնդրեց, որ կրկես գնան: Եվ հայրիկն էլ խոստացավ:

— Կրկեսները քաղաքից դուրս են գտնվում,— զգուշացրեց հայրիկը:—Ջրահագցեստներդ հագեք...:

... Քիչ հետո նրանք արդեն դուրս էին եկել քաղաքից: Սկզբում երեխաներին տարօրինակ էին թվում զրահազգեստները: Նրանք ծուռ-ծուռ իրար էին նայում և ուզում էին ծիծաղել մեկը մյուսի վրա, բայց հիշելով, որ իրենք էլ, հայրիկն էլ նույն ձևի զգեստներ են հագել, լռում էին: Զրահազգեստները պատրաստված էին ամուր ու թեթև մետաղից: Նրանց գլխին ապակյա գնդեր կային: Իսկ գնդերի վրա այնպիսի բեղիկներ, ինչպիսին ունենում են խեցգետինները: Առանց այդպիսի հագուստների հնարավոր չէ Լուսնի վրա զբոսնել:

— Ոտքո՞վ ենք գնալու,— հարցրեց Արամիկը:

— Ես հոգնում եմ,—Արամիկը պպզեց: Նա ուզում էր գնալ այն փայլուն մեքենաներով, որոնք թռչում են երկնքում:

— Չես հոգնի, ծիծաղեց հայրիկը:—Տուր ձեռքդ:

Նա բռնեց Քնարիկի ու Արամիկի ձեռքից և սկսեց վազել: Ձնայած գետինը խորդուբորդ էր, բայց վազելը շատ հեշտ էր: Ասենք, նրանք ոչ թե վազում էին, այլ մեծ-մեծ թռիչքներ կատարում:

— Ու՜... ու՜...—գոչեց Արամիկը: Նրա շունչը թռչելու ժամանակ կարծես կտրվում էր:

Նրանք քաղաքից շատ հեռացան: Նստեցին մի բարձր ժայռի կատարին ու որոշեցին մի փոքր հանգստանալ:

— Ինչո՞ւ Երկրի վրա վազել չենք կարողանում,—հարցրեց Քնարիկը:

— Ինչպե՞ս:

— Թռչելով:

— Ա՜... Ջենք կարողանում, որովհետև մենք Երկրի վրա ավելի ծանր ենք, իսկ այստեղ, Լուսնի վրա, ամեն ինչ վեց անգամ թեթևանում է: Օրինակ՝ վեց կիլոգրամը դառնում է մեկ կիլոգրամ:

— Վա՜յ—բացականչեց Քնարիկը:

Իսկ Արամիկը զարմացած նայում էր վեր: Ձնայած ցերեկ էր, բայց երկնքում արևի հետ փայլում էին փոքրիկ-փոքրիկ լույսեր:

— Մութի ծակերը... Տես Քնարիկ, մութի ծա-



կերը,— երկինքը ցույց տալով, հիացած գոչեց Արամիկը:

— Դրանք աստղեր են:

Աստղեր են, բայց ոնց որ մութի ծակեր լինեն... Ամեն գիշեր երևում են,— գոչեց Արամիկը:

— Լավ, թող լինեն մութի ծակեր,— ժպտաց հայրիկը: — Տեսնո՞ւմ եք, ա՛յ, այն կողմը կրկեսն է:

Երեխաները նայեցին հայրիկի ցույց տված ուղղությամբ: Հեռվում երևում էր կլոր կրկեսը: Միայն թե այդ կրկեսը գմբեթ չուներ: Ա՛յ քեզ բան... Իսկ որտեղի՞ց են կապում պարանները, որոնց վրա փայլուն-փայլուն շորերով մարդիկ գլխիվայր պտտվում են:

— Գնանք մոտիկ,— խնդրեց Քնարիկը:

... Հայրիկը նորից բռնեց երեխաների ձեռքից ու թռավ ցած: Նրանք ոչ թե ընկնում, այլ հանդարտ իջնում էին, կարծես պարաշյուտներ ունենային: Իսկ երբ ցածից Քնարիկը վեր նայեց՝ վախից կուչ եկավ: Ժայռը շատ բարձր էր...

Նրանք վազեցին: Մի քանի անգամ մեծ-մեծ թռիչքներ անելուց հետո, հայրիկը կանգնեց ու ասաց.

— Ահա կրկեսը:

— Սա կրկես չի,— վշտացավ Քնարիկը:

— Կրկես չի,— կրկնեց Արամիկը:

— Սար է:

— Սար է,— կրկնեց Արամիկը.

Հայրիկը ծիծաղեց: Նա այսօր շատ ուրախ էր ու միշտ ծիծաղում էր:

— Լուսնի կրկեսները այսպիսի կլոր սարեր են:

— Իսկ գլխիվայր պտտվող մարդիկ ու ծաղրածուներ չկա՞ն:

— Սարերում ծաղրածուներ չեն լինում:

— Ես ծաղրածու եմ ուզում... Ես ծաղրածու եմ ուզում,— փորձեց լաց լինել Արամիկը և ձեռքը տարավ աչքերին: Բայց զրահազգեստի ապակյա ցունդը, որը հագել էր գլխին, խանգարեց: Տեսնելով, որ ձեռքը աչքերին չի հասնում, Արամիկը որոշեց լաց չլինել:

— Դուք իսկակա՞ն կրկես եք ուզում,— գլխի ընկավ հայրիկը:

— Ես Լուսնի կրկեսն եմ ուզում,— ասաց Քնարիկը:

— Լուսնի վրա կլոր սարերը կոչվում են կրկեսներ,— բացատրեց հայրիկը:— Իսկական կրկեսը գտնվում է քաղաքում: Ա՛յ, հենց մի քանի օր առաջ Երկրից կրկեսային խումբ է եկել: Ես ձեզ կտանեմ այնտեղ:

Ու նրանք նորից վերադարձան փուչիկի նման կտուր ունեցող քաղաքը:

* * *

Երեկոյան Քնարիկն ու Արամիկը ընթրիքից հետո գնացին քնելու: Նրանք երկուսն էլ դժգոհ էին: Ճիշտ է՝ նրանք տեսան ծաղրածուին, որը ավելի բարձր էր թռչում, քան Երկրի վրա: Բայց չէ որ այստեղ ամեն ինչ թեթևանում էր: Նրանք տեսան փայլուն շորեր հագած մարմնամարզիկներին, որոնք ավելի դժվար ու վտանգավոր շարժումներ էին անում, քան Երկրի վրա:

Բայց երբ երկուսն էլ արդեն պառկել էին տաքուկ անկողիններում, Քնարիկը մտածեց-մտածեց ու ասաց.

— Լուսնի վրա կրկեսը հետաքրքիր չէ... Նույնն է, ինչ Երկրի վրա... Ճի՞շտ է, Արամիկ:

Արամիկը արդեն քնել էր ու չպատասխանեց:

— Չէ, նույնը չէ... Երկրի վրա ավելի դժվար է... Այստեղ մենք էլ ենք շատ բարձր թռչում,— կամացուկ ասաց Քնարիկը և փակեց աչքերը:

Երեխանե՛ր, կարո՞ղ եք պատասխանել հետևյալ հարցերին.

1. Ինչո՞ւ է Լուսնի քաղաքը ծածկված ապակու գմբեթով:
2. Ինչո՞ւ է մարդու քաշը Լուսնի վրա վեց անգամ թեթևանում:
3. Ինչո՞ւ Լուսնի վրա ցերեկն էլ են աստղեր երևում և այլն:
4. Ինչո՞ւ փուչիկի նման գմբեթ ունեցող քաղաքից դուրս գալու դեպքում անհրաժեշտ է զրահազգեստ հագնել:
5. Ինչո՞ւ Լուսնի վրա օդ չկա:



# ԼՈՒՍԱՖՈՐՆԵՐ



ՄԱՄԻԿՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Մեր փողոցի խաչմերուկում,
Առավոտից մինչ իրիկուն
Մոտորների երգը առույգ
Կարկաչում է ինչպես առու։

Անց է կենում «ԳԱԶ»-ը արագ՝
Տուֆ քարերը մեջքին առած։
Նրան ո՞ւր է տանում ուղին.
Նոր կառուցվող շենքը ուղիղ։

Հոնդյունով ուրախալի
Մի ուրիշն է ահա գալիս.
Մոտիկ գյուղն իր միրգը քաղած
Տվել է, որ բերի քաղաք։

Պիոներական Ծաղկաձորի
Թովիչ ճամփան բռնած նորից,
Անցնում է մի «ԶԻԼ» հևիհև՝
Մանուկներին առած իր հետ։

Նայի՛ր, հյուր է բերում «ՎՈԼԳԱ»-ն
Զինաստանից մեր բարեկամ.
Երևանը՝ նոր ու սիրուն,
Հիմա ո՞ւմ չի հրապուրում։

Այսպես ահա տեսակ-տեսակ
Ավտոների անվերջ հոսանք.
Անվերջ երթ է տրոլեյբուսի՝
Դեպի հարավ, դեպի հյուսիս։

Բայց թե երթն այդ, հոսանքը մեծ
Ո՞վ է դնում ճիշտ հունի մեջ,
Հուշում կարգը անց ու դարձի
Խաչմերուկում մեր փողոցի։

Տե՛ս, վերևում ձգված լարից
Լուսաֆորն է կախվել. Գարի՛կ,
Լապտերները ահա սիրուն
Մեկ վառվում են ու մեկ՝ մարում։



Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Քեզ ասում է լույսը դեղին՝
Խաչմերուկում զգույշ եղի՛ր.
Երբ ժպտում է լույսը կանաչ՝
Ուղին բաց է, անցի՛ր առաջ:

Իսկ երբ կարմիր լույսն է շողում,
Կանգնի՛ր մի պահ դու քո տեղում.
Ուրիշին է տվել ճամփան
Ապարատը բրոնզափայլ:

Եվ առանց այդ «դիրիժորի»
Փողոց հիմա դու չես ճարի.
Որտեղ շարժում կա ողջ օրը,
Այնտեղ պետք է լուսաֆորը:

Բայց, մի փողոց կա, իմացի՛ր,
Փռված դիմդ երկար ու ձիգ,
Ուր քեզ օգնել չի կարող նա,
Կողմնորոշվել թե ուզենաս:

Այդ քո կյանքի ուղին է, որ
Սկսվում է դեռ նոր, դեռ նոր.
Եվ ուրիշ է, ուրիշ, Գարի՛կ,
Լուսաֆորն այդ ճանապարհի:

Դպրոցն է, իմ խելոք մանկիկ,
Ուղեցույցը գալիք կյանքիդ.
Նա էլ ունի լույսեր պես-պես,
Որ պետք է միշտ ուղեկցեն քեզ:

Գիտությունն է լույսերը այդ,
Գրքերը պարզ, գրքերը բարդ,
Աշխատանքը՝ ազնիվ ու վեհ,
Բարիքների աղբյուրը մեր:



# ԹԵ ԻՆՉՈՒ ԼՈՒՍԻԿԻՆ ՉԷԻՆ ՆՍՏԵՑՆՈՒՄ ԳՆԱՑՔ

ԿԱՌԼԵՆ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Շենքի բակում խաղում են Աստղիկը, Դավիթը, Մհերիկը, Կարինեն, Արայիկը, Անահիտը և փոքրիկ Լուսիկը: Հանկարծ բակ է դուրս գալիս Դավիթը և կանչում.

— Երեխեք, եկեք գնացք խաղանք:

— Խաղանք, խաղանք, — շրջապատելով Դավթին, աղմկում են երեխաները:

— Դու փոքր ես, քո գործը չի, — մեծավարի ասում է Դավիթը:

Լուսիկը լռում է նոթերը կիտելով:

— Ես մեքենավար եմ, իմ շոգեքարշը գնում է Կիև, — հպարտությամբ գոչում է Դավիթը և կանչում.

— Տո՜ւ... ո՜ւ... ո՜ւ...

— Ընկեր մեքենավար, ինձ էլ կտանե՞ս Կիև, — ասում է Աստղիկը:

— Մեզ էլ կտանե՞ս, — աղմկում են մյուսները:

— Նստե՛ք, շո՛ւտ, — գոռում է Դավիթը:

— Ինձ էլ կտանե՞ս, — ասում է փոքրիկ Լուսիկը:

— Ո՛չ, անլվա աղջկա Կիև չեն թողնում, — մերժում է «մեքենավարը»:

— Սպասի՛ր, ես հիմա կլվացվեմ կգամ, հա՞, — ասում է Լուսիկն ու վազում տուն:

Քիչ անց նա բակ է ելնում լվացված: Դեմքը և ձեռքերը ձյան պես մաքուր են:



— Ես մեքենավար եմ, իմ շոգեքարշը գնում է Լենինգրադ, — հանդիսավոր ասում է Դավիթը և կանչում.

— Տո՜ւ... ո՜ւ... ո՜ւ...

— Ընկեր մեքենավար, ինձ էլ կտանե՞ս Լենինգրադ, — ասում է Աստղիկը:

— Մեզ էլ կտանե՞ս, — աղմկում են մյուսները:

— Նստե՛ք, շո՛ւտ, — գոռում է Դավիթը:

— Ինձ էլ կտանե՞ս, — ասում է փոքրիկ Լուսիկը:



— Ո՛չ, գզգզված մազերով աղջկա Լենինգրադ չեն թողնում, — խորամանկ ժպտալով պատասխանում է «մեքենավարը»։

— Սպասիր, ես հիմա կսանրվեմ կգամ, լա՞վ, — շշնջում է Լուսիկն ու վազում տուն։

Մի փոքր անց նա բակ է ելնում սանրված։ Սպիտակ, գեղեցիկ ժապավենը ասես թիթեռնիկ լինի նրա գլխին։

— Ես մեքենավար եմ, իմ շոգեքարշը գնում է Մոսկվա, — նորից գոչում է Դավիթն ու կանչում.

— Տո՜ւ... ո՜ւ... ո՜ւ...

— Ընկեր մեքենավար, ինձ էլ կտանե՞ս Մոսկվա, — ասում է Աստղիկը։

— Մեզ էլ կտանե՞ս, — աղմկում են մյուսները։

— Նստեք, շո՛ւտ, — գոռում է Դավիթը։

— Ինձ էլ կտանե՞ս, — անվստահ ասում է Լուսիկը։

— Ո՛չ, Մոսկվան չի ընդունի այն աղջըկան, որը չի լսում մորը ու միշտ բարկացնում է նրան, — պատասխանում է մեքենավարը։

Լուսիկի ռունգերը նորից են լայնանում, և նա լացակումած ասում է.

— Ես միայն երեկ եմ բարկացրել...

Լուսիկի մայրը, որ պատուհանից հետևում էր խաղին, ժպտալով կանչում է.

— Ընկեր մեքենավար, Լուսիկը ճիշտ է ասում, ինքը ինձ միայն երեկ է բարկացրել։

— Էլ չեմ բա՛րկացնի, ամեն օր երեսս կլվանամ, մազերս կսանրեմ, — աղերսում է Լուսիկը։

— Լավ, նստիր, — այս անգամ համաձայնվում է «մեքենավարը»։



— Տո՜ւ... ո՜ւ... ո՜ւ... — նորից սուլում է «շոգեքարշը» և շարժվում՝ տանելով իր հետ նաև ուրախությունից փայլող, փոքրիկ Լուսիկին։

# ՏԻԿՆԻԿԻ ԴԱՍԸ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ



Տեսե՛ք, տեսե՛ք Տաթևիկին՝
Դաս է տալիս իր տիկնիկին:
Ցուցափայտը ձեռքում բռնած,
Ակնոցները քթին դրած,
Մեկ գնում՝ աջ, մեկ գալիս՝ ձախ
Ու հարցեր է տալիս հաճախ:
Նա շատ խիստ է ու պահանջկոտ,
Կատուն անգամ չի գալիս մոտ:
Ոչ մի հանցանք նա չի զիջում,
Ո՛չ զանգ ունի, ո՛չ ընդմիջում...
— Դե, տիկնիկ ջան, ուշադիր կա՛ց,
Գրքիդ չորրորդ երեսը բա՛ց:
Մինչև հիմա դեռ չես բացե՞լ,
Ի՞նչ է, հո չե՞ս հիվանդացել:
Տեսնում եմ ինձ լավ չես լսում,
Գրքին նայի՛ր, ի՞նչ կա դրսում...
Մի կռացիր գրքի վրա,
Թե չէ մեջքդ ծուռ կմնա...
Հազար անգամ ասել եմ, խե՛նթ,
Խաղ չենք անի թանաքի հետ.
Անցյալ օրը չառա՞ր՝ խրատ,
Երբ թանաքը թափվեց վրադ:
Չէ՛, տեսնում եմ էլ ելք չկա.
Մորդ կասես թող դպրոց գա...



# ԶԱՏԻԿԸ

ԳՐԻԳՈՐ ԵՂԻԿՅԱՆ

Ես զատիկն եմ,
Խատուտիկ եմ,
Մեր պարտեզում
Մի հատիկ եմ:
Հյուր եմ գալիս
Գարնան օրով,
Ինքս կլոր,
Կարմիր շորով:
Մեջքիս ունեմ
Սև-սև պուտեր,
Ունեմ մանրիկ,
Սիրուն ոտեր:
Թռչկոտում եմ
Ծաղկե-ծաղիկ,
Ծծում նեկտար,
Խմում շաղիկ:
Բայց արևը
Հենց որ մտնի,
Իմ հին բույնը
Ես չեմ գտնի.
Որ թփումն էլ
Տանի քունս,
Հենց այնտեղ է
Լինում բույնս:

*Եթե ամսագրից զգուշությամբ պոկեք այս երկու թերթը, ծալեք երկու անգամ և կտրեք, կստանաք մի փոքրիկ գրքույկ:*

այդ գրքույկը թողել է մի փոքրիկ աղջիկ, որ դու կարդաս։
— Ե՞ս,— զարմացավ Վաչիկը։
— Այո, դու։
— Իսկ նա ինձ որտեղի՞ց է ճանաչում,— ավելի զարմացավ Վաչիկը։
— Չգիտեմ, պատասխանեց մատուցողը։





ՀԱՅԿ ՎԱՐԴԱՆՅԱՆ

# ԱՅՆ ԱՆԾԱՆՈԹ ԱՂՋԻԿԸ

բայց երբ նա կարդաց, վերջացրեց, ասաց.
— Շատ լավ գիրք է, թող մնա, որ ուրիշներն էլ կարդան։
Ու գրքույկը մինչև այսօր էլ իր տեղն է, սեղանի վրա։ Ա՛յ, տեսե՛ք։

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ











Վաչիկը վեր կացավ, վերցրեց գրքույկը և սկսեց կարդալ։

Գրքույկը իսկապես, որ շատ լավն էր։

Երբ Վաչիկը կարդաց վերջացրեց, ասաց.





չէր ասել, այն մասին, որ եթե գիրքը դուր է եկել, պիտի թողնել սեղանին.



Մանկական սրճարանում, փոքրիկ սեղանի մոտ նստած էր մի փոքրիկ աղջիկ։ Նա արդեն վերջացրել էր նախաճաշիկը՝ կերել էր մի ձու և խմել մի բաժակ կաթ։ Ինչպես որ նկարված է հաջորդ էջի վրա։

Հետո նրանք ճաշարանի աշխատողին ասացին, թե ինչու են թողնում գրքույկը և գնացին: Եթե ձեզանից մեկը կասկածում է իմ ասածի վրա, թող նայի մյուս նկարին և կհամոզվի:

Քիչ անց, մայրիկի հետ սրճարան եկավ սպիտակ մուշտակ հագած մի փոքրիկ տղա: Նրա անունը Վաչիկ էր: Նա մի անգամից երկու բաժակ կաթ ուզեց և երկուսն էլ խմեց:

Երեխանե՛ր, եթե ձեր մեջ կան այնպիսիները, որոնք կաթ չեն սիրում և ոչ էլ ուզում են հավատալ իմ ասածին, թող նայեն նկարին (էջ՝ 10):

Տեսա՞ք, որ Վաչիկը, իսկապես, երկու բաժակ կաթ է խմել: Երբ նա կաթը խըմել վերջացրել էր, հանկարծ ասաց.

— Վա՜յ, մայրիկ, սեղանի վրա գիրք են մոռացել:

— Չեն մոռացել, ասաց մատուցողը.



— Ինչ լավ գիրք է, մայրիկ: Ի՞նչ էր այդ աղջկա անունը, — հարցրեց նա մատուցողին:

— Չգիտեմ, ասաց մատուցողը:

— Ուրեմն այս գիրքը ես պիտի վերցնեմ ի՞նձ, — հարցրեց Վաչիկը:

— Չգիտեմ, ինչպես ուզում ես: Միայն թե այն փոքրիկ աղջիկը գիրքը թողեց, որովհետև նրան էլ շատ էր դուր եկել... որ ուրիշներն էլ կարդան:

— Ինձ շատ դուր եկավ, ասաց Վաչիկը և դրա համար էլ գիրքը չվերցրեց:

Միայն թե գնալիս նա շարունակ շրջվում և նայում էր գրքույկին, ինչպես որ նկարված է:

Հետո եկան էլի շատ-շատ երեխաներ, կարդացին գրքույկը և բոլորն էլ շատ հավանեցին: Բայց քանի որ նրանք բոլորն էլ գիտեին, որ եթե գիրքը իրենց դուր է եկել, պետք է թողնեն, որ ու-

քույկը թողեց տեղը:

Այն երեխաները, որ դեռ տառերը չըգիտեին, նայում էին նկարներին, որ նույնպես շատ լավ էին: Երբեմն էլ մյուս, արդեն կարդալ իմացող երեխաները, նրանց համար բարձրաձայն կարդում էին գրքույկը:

Բոլոր երեխաներն էլ միշտ հարցնում են այն փոքրիկ աղջկա անունը, որը թողել էր գրքույկը, բայց ոչ մատուցողը, ոչ էլ ճաշարանի վարիչը, չգիտեն այդ լավ աղջկա անունը:

Երեխանե՛ր, ձեզանից ով որ ճանաչում է այդ փոքրիկ աղջկան, թող բոլորին էլ ասի: Իսկ գրքույկը, դեռ ոչ ոք չի վերցրել, որովհետև ով որ կարդում է, ուզում է, որ բոլոր, բոլոր երեխաներն էլ կարդան:

Ա՛յ, հենց երեկ սրճարան եկավ երկրորդ դասարանցի մի տղա, նրան ոչ ոք









Ուտելը վերջացնելուց հետո, նա սկսեց կարդալ այն գրքույկը, որը հայրիկն էր գնել նրա համար։ Այնքա՜ն լա՜վն էր գրքույկը, այնպե՜ս էր նա ուզում կարդացածը պատմել ուրիշներին, բայց սըրճարանում բացի իրենից ոչ ոք չկար։

Եկավ հայրիկը։

— Թե վերջացրել ես, գնանք,— ասաց նա։

— Հայրի՛կ, ինչ լա՜վ է այս գիրքը, ինչ հետաքրքիր։ Ես ուզում էի երեխաներին պատմել, բայց ոչ մի երեխա չկա։ Գիտե՞ս ինչ եմ մտածել, հայրիկ։

— Ի՞նչ։

— Հայրիկ, դու չե՞ս բարկանա, եթե գիրքը ես թողնեմ այստեղ, այս սեղանին, որ երբ ուրիշ երեխաներ գան, նըրանք էլ կարդան։ Ախր շատ լավ գիրք է, հայրի՛կ։

— Իհարկե, չեմ բարկանա,— պատասխանեց հայրիկը։

Ուրիշներն էլ կարդան, ոչ մեկը գրքույկը չվերցրեց իրեն։

Միայն մի նիհար տղա, սիսեռի նման մանր ու կլոր աչքերով, խորամանկություն արեց ու ասաց, որ գիրքը իրեն դուր չի եկել և ինքը կարող է վերցնել։

— Եթե դուր չի եկել, էլ քո ինչի՞ն է պետք, ինչու՞ ես վերցնում,— ասացին մյուս երեխաները։

Խորամանկ տղան շատ ամաչեց և գըր-



# ԾԻՏԻԿԸ ՄՐՍՈՒՄ Է

ՀԵՂԻՆԵ ՄՈՒՐԱԴՅԱՆ



Ա՜խ, մրսում է
Խեղճ ծիտիկը,
Տե՛ս, դողում է
Մերկ տոտիկը։
Մայրիկ, թել տուր
Հապա փորձեմ,
Ծիտիկին տաք
Գուլպա գործեմ։
Տո՛ւր ինձ ասեղ,
Քիչ էլ կտոր,
Որ ծիտիկին
Կարեմ մի շոր։
Կարեմ փափուկ,
Սիրուն գոգնոց,
Հետո էլ տաքուկ,
Մի լավ թիկնոց,
Որ ծիտիկը
Էլ չմրսի,
Ծառին թռչի
Ծի՛վ, ծի՛վ ասի։

Նկ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ԶԱՔՄԱՔՋՅԱՆԻ

# ԱՆՁՐԵՎ

ԷԴՎԱՐԴ ԱՎԱԳՅԱՆ

—Անձրև, անձրև, ի՞նչ ես գալիս,
Ի՞նչ ես լալիս անդադար,
Ու գալիս ես, անվերջ գալիս,
Զունես հանգիստ ու դադար։
— Ես չեմ լալիս,
Ես չեմ լալիս,
Ես գալիս եմ այսպես հորդ,
Որ զովանան,

Որ հովանան
Ծիլ ու ծաղիկ, թուփ ու խոտ,
Որ լվացվեն,
Պայծառ բացվեն
Դաշտ ու արոտ, հանդ ու հերկ,
Ես գալիս եմ,
Ես գալիս եմ
Ինձ հետ բերում երգ ու բերք։




ԱՂԱՎՆԻ ՄԱՆԱՍՅԱՆ

Այնտեղ, վերևում, աստղերի մեծ թագավորության մեջ ապրում էին մի քույր, մի եղբայր՝ Արևն ու Լուսինը։ Արևը ջանասեր էր, գործունյա, կարգապահ։ Ինչպիսի գործ էլ հանձնարարեր մայրիկը, նա կատարում էր հանգիստ, մտածված և անպայման հաջող վերջացնում։ Բոլորովին հակառակն էր Լուսինը։ Դեռ մայրիկի հանձնարարությունը լրիվ չլսած, չհասկացած, նա թռչում էր կատարելու և այնքան էր շտապում, որ խճճվում էր գործի մեջ ու հոգնած, ձանձրացած՝ կիսատ թողնում։

Արևի կատարած բոլոր գործերը աստղերի մեծ ընտանիքում միշտ գովասանքի էին արժանանում, իսկ Լուսինը միշտ մնում էր ամոթով։ Եվ այսպես, տարինե՜ր շարունակ Արևը թե՛ տանը, թե՛ դպրոցում իրեն հանձնարարված գործերը կատարում էր գերազանց և մինչև վերջ։ Նրան ասում էին՝ հատակը լվա, նա դռներն ու լուսամուտներն էլ էր լվանում, ասում էին՝ հայրիկի համար վերնաշապիկ կարիր, նա Լուսնի համար էլ գլխարկ էր կարում... և շատ այսպիսի գործեր։ Իսկ ինչպե՞ս էր սովորում Արևը։ Նա սովորում էր շա՜տ, շա՜տ լավ։ Դասատուների տված բոլոր հանձնարարությունները կատարում էր ժամանակին։ Ամեն ջանք թափում էր լեզուներ սովորելու համար. չէ՞ որ հետագայում, երբ ինքը մեծանար ու անցներ աշխատանքի, կարիք կլիներ Աստղերի երկրից գնալ ուրիշ երկրներ։ Եթե լեզուներ չիմանար, ինչպե՞ս կարող էր աշխատել, իրեն ինչպե՞ս պիտի հասկանային։ Եվ Արևը սովորում էր, հա՛ սովորում։

Իսկ չարաճճի Լուսինն ամբողջ օրը թրև էր գալիս փողոցներում, ընկերանում վատ տղաների հետ, դպրոցից հաճախ բացակայում էր, իսկ տանը համարյա ոչինչ չէր անում։ Շատ էին խրատում նրան մեծ աստղերը, բայց Լուսինը նրանց բոլորովին չէր լսում, ոչ մի օգտակար գործ չէր կատարում։ Եվ ահա անցան տարինե՛ր, տարինե՛ր։



Արևն ու Լուսինը մեծացան, մեկը՝ լույսով ու իմաստությամբ, իսկ մյուսը՝ դատարկ ու փուչ։ Արևն սկսեց աշխատել։ Նա լսել էր մեծերի խորհուրդները, սովորել էր, ուժ ու եռանդ, իմաստություն կուտակել։ Նա արդեն ամեն օր գնում էր աշխատանքի՝ Երկիրը լուսավորելու։ Երեկոյան հոգնած ու վաստակած, սակայն գոհ, Արևը վերադառնում էր տուն։

Լուսինն էլ ուզեց աշխատել։ Նա արդեն մեծ էր, էլ չէր կարող փողոցներում թրև գալ, ամբողջ օրը անգործ մնալ։ Բայց ի՞նչ աներ, չէ՞ որ ոչինչ չգիտեր, ոչինչ չէր սովորել։ Եվ նա որոշեց խնդրել մայրիկին, որպեսզի իրեն թույլ տա Արևի հետ գնալ աշխատանքի։ Մայրիկը բացատրեց, որ Երկիրը լուսավորելու համար Լուսինը ոչինչ չունի կուտակած, ոչ էներգիա, ոչ ուժ, և քանի դեռ շատ ուշ չէ, պետք է սովորել։ Բայց Լուսինը դարձյալ չլսեց մայրիկին և չգնաց սովորելու։ Նա ամեն գիշեր քնած Արևից գաղտագողի լույս է վերցնում և գնում Երկիրը լուսավորելու։ Բայց դե ուրիշից վերցրած լույսը ի՞նչ պիտի լուսավորի կամ տաքացնի, երբ չունես սեփականը։

Ահա թե ինչու Լուսնի լույսը թույլ է ու սառը։



Նկ. ՎԱԶՐԻԿ ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

# ԲՈՂԲՈՋՆԵՐԻ ԵՐԳԸ

ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

Բողբոջն ասաց տխրագին.
— Նեղ է շորը իմ հագի...
Ի՞նչ դերձակ է սա կարել,
Ինչո՞ւ կոճակ չի շարել...
Զեփյուռն ասաց սրտակից,
— Թափ տուր՝ կընկնի քո հագից:
Բողբոջն ուսը դեմ արեց,
Հա՛ դես հրեց, դեն հրեց.
Քանդեց անկար նեղ շորը
Ու նայեց չորս բոլորը.
Նայեց ուրախ, զարմացած,
Իսկ երբ ծունկը տեսավ բաց,
Ջինջ արցունքով լաց եղավ,
Շաղիկներով թաց եղավ,
Թե՝ պատռվեց, ա՜խ, շորս,
Բա ի՞նչ անեմ ես մորս...
Ծառ մայրիկը ձայն տվեց.
— Է՜հ, ինչ անենք՝ պատռվեց...
Արևն ասեղ կտա քեզ,
Երկինք տատը՝ խաս բեհեզ,
Հող պապիկը՝ մի քիչ ներկ...
Չես մնա դու այդպես մերկ:
Ես էլ կտամ զույգ թևիկ՝
Կանաչ, սիրուն տերևիկ:
Չվախենաս մենակ դու.
Այնքա՜ն բողբոջ կա այգում...
Ա՛յ, քիչ հետո կարթնանան.
Ճերմակ ծաղիկ կդառնան:
Ասաց-չասաց՝ պայթեցին,
Հազար բողբոջ բացվեցին
Այգին կանչեց. — Բալիկնե՛ր,
Իմ քնքշաթև ծաղիկներ.
Բարով՝ դառնաք մեղրանուշ,
Ոսկե պտուղ կարմրաթուշ:



Նկ. ՍԵԴԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ՄՈՐ «ՊԱՇՏՊԱՆԸ»

ՊԱՐՈՒՅՐ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

Տատը հյուր է գնացել,
Հայրը՝ գործարան։
Տանը մայրն է մնացել
Ու մեկ էլ Շարան։
Մայրը դուրս է եկել բակ,
Իսկ ննջարանում
Տղան նստել է մենակ
Ու խաղ է անում։
Ի՜նչ գեղեցիկ մայրամուտ,
Բարդին աժդահա
Ոսկեզօծվել ու քամուց
Պարում է ահա։
Իր լեզվով ծիտն է խոսում
Կատարին ծառի.
Արևի՞ն էափսոսում,
Որ պիտի մարի։
Ժպտում արևն ուժասպառ
Ու մայր է մտնում։
Փոքրիկ Շարան քաջաբար
Խաղում է մթնում։
Քամին բակում ամայի
Հանեց հազար ձայն...
Հանկարծ մտքով Շարայի
Շա՜տ բաներ անցան։
Մայրը ինչու՞ ուշացավ...
Տղան շվարեց,
Շուտ աթոռին բարձրացավ
Ու լույսը վառեց։
Շուրջը պայծառ, լուսավոր,
Բայց ի՞նչ օգուտ, ի՞նչ...
Թաքցընելու ի՞նչ կա որ.
Վախեցավ մի քիչ։
Իսկույն բակ է նետվում նա,
Կպչում մոր փեշից։
Մայրն ասում է.— Ներս գնա
Խանգարում ես ինձ։
Տղան դողում է ահից,
Մոր վզովն ընկած.
— Բա որ այստեղ առանց ինձ
Վախենա՞ս հանկարծ։





# ՆԱՊԱՍՏԱԿՆԵՐԸ

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ*

*Նկ. ՎԱԶՐԻԿ ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ*

Աշուն էր ուշ, աշուն միգոտ,
Ցուրտ օրերը պիտի գային,
Բայց մերկացող անտառի մոտ
Դեռ խնձորներ այգում կային։
Մոտ էր մթին անտառն այգուն,
Եվ շառաչող հին անտառից
Գիշերները հաճախ թաքուն
«Հյուրեր» էին այնտեղ գալիս։
Մի գիշեր էլ անտառի մեջ,
Ցոլցլացող աստղերի տակ
Բացել էին ուրախ մի վեճ
Երեք սիրուն, ժիր նապաստակ։
— Ջա՜ն, մայրի՛կ ջան, մի ձագն ասաց, —
Իսկույն ծառը կբարձրանամ
Եվ կթափեմ ծառից ես ցած
Խնձորներ մեծ ու քաղցրահամ։
— Ես էլ տան դուռն այգեպանի
Վրան դրսից լավ կփակեմ։
— Ես էլ անցքով պատուհանի
Գլխին փայտով պինդ կզարկեմ։
Հիմա լսեք, ձագեր, դուք ինձ,
Բռնենք ոլոր այս կածանը...
Հենց տեղ հասանք՝ այգեպանից
Պիտի խլենք հրացանը...
Հասան ահա ծառերի տակ,
Մութ էր շուրջը, չկար լուսին...
Մի մեծ խնձոր այդ ժամանակ
Ծառից ընկավ մեկի ուսին։
— Վա՜յ, մայրիկ ջան, ո՞վ կրակեց,
Ո՞վ գնդակով ուսս ծակեց։
Էհե՜յ, փախե՛ք, ձագեր իմ քաջ,
Չթուլանաք հանկարծ վախից,
Մեծ վտանգ կա աչքիս առաջ,
Կրակում են աջ ու ձախից։
Եվ շփոթված ու դողահար,
Նորից բռնած ճամփան ոլոր,
Հրմշտելով նրանք իրար,
Հետև թողին անտառ ու ձոր։



# ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ԼԻՆՈՏԻՊԻԿԻ ՖԵԼԻԵՏՈՆՆԵՐԸ

ԱՐՏԱՇԵՍ ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ



### ՖԵԼԻԵՏՈՆ ԵՐԿՐՈՐԴ

## ԹԱՓԹՓՎԱԾ ՔՆԱՐԻԿԸ

Լսել էի, որ № 25 դպրոցի աշակերտուհի Քնարիկը չափազանց ծույլ ու թափթփված է, ուղղակի անտանելի: Ուզում է, որ իր փոխարեն ամեն ինչ ուրիշներն անեն, նույնիսկ հագցնեն ու հանեն իր շորերը: Ծիծաղելի է, չէ՞: Այն էլ ասեմ՝ որ չէի ուզում հավատալ, դրա համար էլ որոշեցի Քնարիկենց տուն գնալ ու անձամբ ստուգել:

Ահա ես արդեն Քնարիկենց տանն եմ: Սո՛ւս, բոլորը քնած են: Շուտով կլուսանա: Քնարիկն էլ է քնած: Օ՛յ, ճիշտ որ, ի՜նչ թափթփված է այդ Քնարիկը: Ես դեռ երեկոյից հետևում եմ նրան: Ուզեց քնել՝ արագ-արագ հանեց շորերը ու գցեց այս ու այն կողմ: Վերարկուն նետեց թախտի տակ, շրջազգեստը թողեց խոհանոցում, գուլպաներից մեկը կախեց մեխից, իսկ մյուսը բարձի տակ խոթեց: Ա՛յ քեզ աղջիկ: Փնթի ու ցրված: Կոշիկներից մեկը գրապահարանի վրա դրեց, երևի կարծեց, թե գիրք է, իսկ մյուսը դրեց սեղանին: Ա՛յ քեզ աղջիկ:

Եվ այստեղ ինձ պետք եկավ իմ ամենալավ հատկությունը: Ախր ես լսում եմ անգամ ամենացածր շշուկները, շշունջները: Եվ ահա գիշերը, երբ քնած էին բոլորը, Քնարիկի հագուստները սկսեցին կամացուկ զրուցել: Պարզ է, ես իսկույն տպագրեցի...

ԿՈՇԻԿ — Իբր թե կոշիկ եմ ես: Քար լինեի իմ փոխարեն, չէր դիմանա: Քնարիկն ինձ ու իմ եղբորը խփում է ամեն տեղ, ամեն մի փոքր առիթով ամուր դոփում է հատակին: Այսօր այնպես նետեց, որ քիթս պլոկվեց: Գոնե մաքրի, փայլեցնի... չէ, մի օր կփախչեմ նրանից:

ՇՐՋԱԶԳԵՍՏ — Է՜, եղբայր, իսկ ե՛ս ինչ անեմ, ինքդ ես տեսնում. մի՞թե ես շրջազգեստի նման եմ: Տրորված, կեղտոտ, երկրորդ կոճակս վաղուց բաժանվել է ինձնից ու ընկած է գրպանումս: Մի օր չի ասի ամրացնեմ կոճակը: Զարմանում եմ, ո՞նց չի հասկանում, որ եթե ես մաքուր եմ ու խնամքով արդուկված, ապա առաջին հերթին իրեն եմ գեղեցկացնում, ի՜նչ կասես, վերարկու ջան:

ՎԵՐԱՐԿՈՒ — Գեղեցկությունը դեռ մի կողմ: Ուսերս գիտե՞ս ո՜նց են ցավում: Ինչ-որ ցերեկները լցնի գրպաններս, էլ չի հանի: Եվ ինչե՜ր ասես չկան իմ գրպաններում: Ա՛յ, տեսեք, է՛լ քարի կտորներ, է՛լ սրիչ, է՛լ ռետին, է՛լ կեղտոտ թաշկինակ, է՛լ ծալած տետր... դու քո մի կոճակի մասին ես խոսում, իսկ իմ երկու կոճակն էլ չկան:

ԳԻՐՔ — Է՜, ոչ մեկդ էլ մեզ նման չեք լինի:

ԿՈՇԻԿ, ՇՐՋԱԶԳԵՍՏ, ՎԵՐԱՐԿՈՒ — Դա՞ ով է, ո՞վ ես, որ գետնին ես ընկած:

ԳԻՐՔ — Ես մի խեղճ գիրք եմ: Այսինքն՝ հիմա եմ խեղճ: Երբ Քնարիկն ինձ մի քանի օր առաջ գնեց խանութից՝ գեղեցիկ էի ու մաքուր: Բայց ի՞նչ արեց նա, թանաք է քսել երեսիս, պատռել թերթերս, մեջքիս գորտի նման ինչ-որ բան է նկարել: Մի օր մնացի միայն գրապահարանում, հետո Քնարիկն ինձ մեկ այստեղ է շպրտում, մեկ այնտեղ ու միշտ հայհոյում է, երբ ինձ չի կարողանում գտնել: Կարծես թե մեղավորը ես եմ:



Ու միայն ինձ հետ չի այդպես վարվում, իմ բոլոր գիրք-քույրերն էլ նույն վիճակում են. փնթի է, փնթի...

ԲՈԼՈՐԸ ՄԻԱՍԻՆ — Հա, հա, փնթի է, փնթի, թափթփված...

ԼԻՆՈՏԻՊԻԿ — Ահա, Քնարիկն արթնանում է։ Հիմա տեսնենք, թե ի՞նչ է լինելու։

ՔՆԱՐԻԿ — Վա՜յ, այս ի՞նչ է, ժամը ո՞ւթն է արդեն։ Բայց ես ուշանում եմ։ Դեյրա՞ս ուր է։ Մա, ո՞ւր է դեյրաս։ Կոշիկիս մե՞կն ուր է, ո՞վ է կախել մեխից։ Ա՛յ քեզ բան։ Ախր ուշանում եմ։ Նախաճաշ տվեք ինձ, շուտ արեք։ Գիրքս ո՞վ է վերցրել, քանի՞ անգամ ասել եմ՝ ձեռք չտաք։ Ա՜խ, զզվելի, թե ձեռքս կընկնե՜ս։ Պայուսա՞կս ուր է... մամ, պայուսակս որտե՞ղ է։ Ախր ուշանում եմ։

ԼԻՆՈՏԻՊԻԿ — Ուշանո՞ւմ ես։ Իսկ ո՞վ է մեղավոր։ Միայն դու, Քնարիկ, միայն քո թափթփվածությունը։ Իմացիր, եթե չուղղվես, ես նորից ձեր տուն կգամ ու նորից կտպագրեմ քո խոսքերն էլ, քո հագուստների խոսքերն էլ։ Ձեռքիցս չես պրծնի...

## ՖԵԼԻԵՏՈՆ ԵՐՐՈՐԴ

## ՆԱՄԱԿԸ

Երեկ մի նամակ ստացա։ Գրել էր Նունիկ անունով մի աղջիկ, որն այս տարի ավարտելու է մանկապարտեզը։ Երևում է, որ շատ բան է ուզեցել ասել, բայց գրել չի կարողացել։ Ահա նրա նամակը։





«Լինոտիպիկ ջան, իմ մեծ եղբայր Գևորգը ինձ չի սիրում»։

Հետաքրքիր է չէ՞, ինչպե՞ս կարող է մեծ եղբայրը իր փոքրիկ քույրիկին չսիրել»։ Դե,— ասացի ինքս ինձ,— անտեսանելի լինոտիպիկ, գնա ուղիղ Գևորգենց տուն ու պարզիր այս խնդիրը։

Հասա այն տանը, որը՞ կրում էր 48 համարը ու արդեն ուզում էի բարձրանալ աստիճաններով, երբ լսեցի, որ մեկը բակում ուժգին գոռում է.

— Հե՜յ, ճամփա տվեք, ճամփա՜, հարյուրի վրա եմ գալիս, հե՜յ։

«Այս ի՞նչ է,— մտածեցի ես,— բակում ավտոմեքենա՞ են քշում»։ Մտա բակ և ի՜նչ տեսնեմ՝ 13—14 տարեկան մի տղա փոքրիկ մի հեծանիվ է նստել ու արագությամբ քշում է։ Իսկ մի փոքրիկ աղջիկ լացակումած վազում է նրա հետևից ու խնդրում.

— Գևորգ ջան, լավ, է՛լի, թող մի քիչ էլ ես քշեմ...

— Հեռո՜ւ,— առանց աղջկան ուշք դարձնելու, բղավում էր տղան,— հարյուրի վրա եմ գալիս...

Ինչպես երևում է, սրանք հենց Գևորգն ու Նունիկն են,— եզրակացրի ես ու սկսեցի տպագրել։

ՆՈՒՆԻԿ — Ախր իմ հեծանիվն է, չէ՞, Գևորգ ջան, մի շրջան էլ ես անեմ։

ԳԵՎՈՐԳ — Հեռո՛ւ, թե չէ տակը կգցեմ, ա՛յ, էսպես...

ՆՈՒՆԻԿ — Վա՜յ, վա՜յ...

Ահա թե ինչ պատահեց։ Գևորգը ուզեց շրջել ղեկը և ընկնել Նունիկի հետևից, բայց հանկարծ հեծանիվը շրջվեց ու ինքը բերանքսիվայր ընկավ գետնին։

ՆՈՒՆԻԿ — Վա՜յ, Գևորգ, ի՞նչ եղավ, որտե՞ղդ ցավաց։

ԳԵՎՈՐԳ — Դե գնա, բոլորը քո պատճառով եղավ, ա՛յ քեզ, ա՛յ...

ԼԻՆՈՏԻՊԻԿ — Այստեղ ես չդիմացա։ «Ինչպե՞ս ես համարձակվում,— գոչեցի ես,— ինչպե՞ս է ձեռքդ բարձրանում փոքրիկ Նունիկի վրա։ Ամո՛թ քեզ»։

Եվ, պատկերացնո՞ւմ եք Նունիկի ու Գևորգի զարմանքը։ Ախր ես մոռացել էի, որ նրանք ինձ չեն տեսնում։

ԳԵՎՈՐԳ — Վա՜յ, էդ ո՞վ էր։ Ա՛յ քեզ բան... ոնց որ հեքիաթում։ Տես, է՛, Նունիկն էլ առիթից օգտվեց ու տուն փախավ։ Հիմա ես կգնամ ու նրան ցույց կտամ։

ԼԻՆՈՏԻՊԻԿ — Ես էլ որոշեցի մտնել Գևորգենց տուն։ «Անհնար է, որ այս տղան դպրոցական լինի» մտածում էի։ Մի՞թե դպրոցականը իրեն թույլ

կտա այդպես վարվել փոքրիկների հետ։ Բայց ո՛չ, դպրոցական է, այն էլ 6-րդ դասարանի աշակերտ։ Ահա դասացուցակը՝ պատին։ Գևորգը ինչ-որ թղթեր է կտրտում մկրատով։ Նունիկը ձեռքն է վերցրել այբբենարանը։

Նունիկ— (Կարդում է) Բադիկ, բադիկ,
Կարմիր տոտիկ,
Էդ ո՞ւր բարով,
Շորոր տալով,
Պստիկ, սիրուն
Բալիկներով։

Գևորգ, Գևորգ ջան, «Շորոր տալովն» ի՞նչ է։

ԳԵՎՈՐԳ—Չգիտեմ։

ՆՈՒՆՈՒԿ—Իսկ բադիկը ո՞ւր է գնում։

ԳԵՎՈՐԳ—Չգիտեմ,

ՆՈՒՆԻԿ—Գիտես, ասա, է՛լի։

ԳԵՎՈՐԳ—Ասացի՝ չգիտեմ, շատ ես համը հանելո՞ւ, հիմա...

ՆՈՒՆԻԿ—Դե, լավ, լավ (արագ-արագ արտասանում է)



Մայրիկ, նայիր ես այսօր
Նկարել եմ մի խնձոր։

Է՛, ես այս բոլորը գիտեմ, Գևորգ ջան, ի՞նչ կլինի ինձ համար «Կացին ախպերը» կարդաս։

ԳԵՎՈՐԳ—Էլ ի՞նչ կուզեիր...

ՆՈՒՆԻԿ—Մեկ էլ «Շունն ու կատուն»։

ԳԵՎՈՐԳ—Իսկ փիղը չէ՞ր ուզի։

ՆՈՒՆԻԿ—Կկարդա՞ս, հիմա բերեմ։

ԳԵՎՈՐԳ—Դե, կորի՛ր, կարծեց ճիշտ եմ ասում։ Հավես ունեմ, է՛լի, քեզ հետ տուն-տուն խաղալու։ Չե՞ս տեսնում ծիտ եմ սարքում։

ՆՈՒՆԻԿ—Իսկ ծիտը կտա՞ս ինձ։

ԳԵՎՈՐԳ—Ա՛ռ, հա, էս քեզ ծիտ, էս քեզ փաչահակ, էս քեզ ագռավ։

ՆՈՒՆԻԿ—Վա՜յ, վա՜յ վա՜յ, ինչո՞ւ ես խփում...

ԼԻՆՈՍՏԻՊԻԿ—Շա՜տ, շա՜տ բարկացա և որոշեցի անմիջապես այդ բոլորը տպագրել։ Թող կարդան այն դպրոցում, որտեղ Գևորգն է սովորում, թող կարդան Գևորգի ընկերները, իմանան, թե ինչպես



է նա վարվում իր փոքրիկ քույրիկի հետ...

Եթե նրանք, ինչպես հարկն է, խոսեն Գևորգի հետ, նա դժվար թե համարձակվի այլևս վիրավորել իր փոքրիկ քույրիկին...

ՖԵԼԻԵՏՈՆ ՁՈՐՐՈՐԴ

## «ԸՆԿԵՐՈՋ ՕԳՆՈՒԹՅԱՄԲ»

Գնացել էի դպրոց ու շրջում էի։ Շատ հետաքրքիր էր, շատ լավ գործեր տեսա, շատ լավ տղաների ու աղջիկների հանդիպեցի, հետո մտա այն դասարանը, որը կից էր ուսուցչանոցին։ Ափսո՜ս, այս հյուսքերով աղջկա պատասխանը չլսեցի։ Ինչպես երևում է, լավ էր սովորել դասը։ Ուսուցչուհին գոհ է.

— Ես քեզ «գերազանց» եմ նշանակում, Անահիտ,—ասաց նա։ Հետո շարունակեց.—Այժմ դասը կպատասխանի... Սարգիսը։ Խնդրեմ, Սարգիս։

Վերջին նստարանը չխկաց։ Այն տղան, որի

# ՍԵԹՈՆ

ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ

— Ասա, Սեթո, «Ա»-ից հետո
Մեր ո՞ր տառը պիտի լինի
— «Ա»-ից հետո պիտի լինի
Ամբողջ շարքը այբուբենի...

անունը Սարգիս էր, բարձրացավ տեղից սաստիկ կարմրած ու շփոթված։ Իհարկե, հավանաբար դասը չգիտե, կարծել է, թե այսօր դասատուն դաս չի հարցնի։ Չէ՞ որ անցյալ դասին հարցրել էր...

Ռուբո, հուշի՛ր,— շշնջաց նա՝ անցնելով առաջին նստարանի մոտով։

— Հուշի՛ր,— տնքաց Ռուբիկը,— իբր թե ես շատ գիտեմ։ Ի՞նչ անեմ, հը՞։— Նա արագորեն շրջվեց դեպի իր ընկերուհին ու կամացուկ ասաց.— Շողիկ, դասագիրքը տուր, շո՛ւտ։

Շողիկը նրան հանձնեց դասագիրքը։ Ռուբիկը բացեց գիրքը ու կրկին հարցրեց.

— Շողիկ, ո՞րն է, այս ծալա՞ծը։

— Դա է,— պատասխանեց Շողիկը։

Մինչ Ռուբիկը դասի տեղն էր որոնում, Սարգիսը ստիպված սկսել էր պատասխանել։ Խոսում էր դանդաղ, բառերը կրկնում էր՝ սպասելով, որ Ռուբիկը հուշի։

— Ընտանի թռչուններ։ Հավը։ Հավը դա ընտանի թռչուն է։ Այսինքն՝ դա նշանակում է, որ թռչում է, բայց տան չորս կողմը։ Հավը փետուրներ ունի։ Հետո հավը առավոտները ձու է ածում,— այսքանը ասելուց հետո Սարգիսը ձայնը ցածրացրեց ու կամացուկ աղաչեց.

— Ռուբո ջան, հուշիր, է՛լի...

— Հիմա, հիմա,— շշնջաց Ռուբիկը ու արագորեն թերթելով դասագիրքը, բացեց ծալած տեղը։

Բայց նա չգիտեր, որ գրքում երկու ծալած տեղ կա և բացեց երկրորդ ծալը, որը բոլորովին ուրիշ դաս էր և վերաբերում էր կաթնասուններին։

Սարգիսը ստիպված կրկնում էր նույն խոսքերը։

— Ուրեմն ձու է ածում։ Ածում։ Ձու, հավը...

Ռուբիկը, որը շտապելուց բոլորովին էլ չէր



լսում, թե ինչ է պատմում Սարգիսը, սկսեց կամացուկ հուշել.

ՌՈՒԲԻԿ— Ուրեմն, լսիր, կաթնասուն կենդանի է, խոտակեր...

ՍԱՐԳԻՍ— Հավը կաթնասուն կենդանի է, խոտակեր, այսինքն սնվում է կաթով։ Ինչի՞ եք ծիծաղում, է՛։

ՌՈՒԲԻԿ— Տալիս է միս, կաթ, բուրդ։

ՍԱՐԳԻՍ— Տալիս է միս, կաթ, բուրդ, պանիր և գյուղատնտեսական այլ մթերքներ։

ՌՈՒԲԻԿ— Որպեսզի կաթ շատ տա, ամռանը տանում են զով արոտավայրեր։

ՍԱՐԳԻՍ— Իսկ ամռանը, երբ շո՛գ է... ի՞նչ... հա, երբ շոգ է ու արևը այրում է, ընտանի թռչուն հավին տանում են զով արոտավայրերը։

(Ամբողջ դասարանը քրքջում է)։

ՌՈՒԲԻԿ— (Տարակուսած) Արա, էս ի՞նչ ա ասում։ Ի՞նչ հավ, տո՛, ասա ոչխարը։

ՍԱՐԳԻՍ— (Շփոթված, մեքենայորեն) Ահա թե ինչ է ասում... ոչխարը։ (հանկարծ զարմանում է) Ի՞նչ ոչխար։ Ներողություն, հավը...հավը...

ՄԻ ԱՂՋԻԿ— Քեզ նման թրջված հավը։ (Բոլորը ծիծաղում են)։

ՍԱՐԳԻՍ— Ա՛խ, Ռուբո, հիմա զանգը կտա, չէ՞...

ՌՈՒԲԻԿ— (Դեռ չհասկանալով). Տո, ոչխա՜ր, ոչխա՜ր։ Մի ոչխարը ունենում է մեկ, երկու և երբեմն էլ երեք գառ։

ՍԱՐԳԻՍ— Դե լավ, է՛, հերիք է... ընկեր Վարդանյան, ես դասս չգիտեմ։ Մյուս անգամ, ազնիվ խոսք...

— Երդվելու կարիք չկա,— ասաց նրան ուսուցչուհին,— ես քեզ «2» եմ նշանակում։ Եվ քանի որ «երկու» ստանալու հարցում քեզ շատ օգնեց նաև քո մտերիմ ընկեր Ռուբիկը, նրան կարող ես շնորհակալություն հայտնել։

## ԱԳՌԱՎԻ ԴՊՐՈՑԸ

*ՀՈՒՍԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Մի ծեր ագռավ վեր կացել,
Երգի դպրոց էր բացել:
Այդ լուրն առած՝ հրջանիկ,
Եկան սարյակ, դեղձանիկ,
Արտույտը և Սոխակը,
Զուշացավ և թութակը:
Ամեն մեկը իր դերում
Շատ շատերին էր գերում,
Սակայն եկան, որ նորեն
Ավելին էլ սովորեն:
Բայց ագռավը ճղճղան
Մի երգ գիտեր. «ղա՜—ղա՜—ղա՜...»
Երբ ղա՜ արեց, չափ տվեց,
Ահա թե ինչ ստացվեց:
Արտույտն էր գիլ ծլվլում,
Դեղձանիկը դայլայլում,
Դեղգեղում էր սոխակը,
Ճլճլում էր սարյակը:
Լոկ թութակը ի պատասխան
Ճիշտ էր կրկնում՝ ղա՜—ղա՜—ղա՜...
—Օ՜, ինչպիսի՜ հիացում,
Թափի, չափի միացում:
Դու կստանաս մի ջութակ,
Որպես նվեր, ի՛մ թութակ,
Իմ խելոք ու բարի սան:—
Մյուսներն այս որ տեսան,
Հուսախաբված ու վարան,
Թևին տվին ու թռան:

## ԾՈՒՅԼԻ ԵՐԱԶԱՆՔԸ

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

Ա՜խ, երանի չունենայի ես ձեռքեր,
Չէին դնի այդքան գործի շարունակ.
Չէ՛, այդ չեղա՜վ... իսկ լավ ճաշեր ու մրգեր
Ինչպե՞ս պիտի ուտեի այն ժամանակ:

Ա՜խ, ականջներ չունենայի երանի,
Չլսեի նախատինքներ անդադար.
Չէ՛, այդ չեղա՜վ... իսկ թե կողքի սեղանից
Ինձ հուշեին, չէի լսի ոչ մի բառ:

Երանի՜ թե չունենայի ես աչքեր,
Որ չասեին նստիր, դասդ պատրաստիր.
Բայց... այդ դեպքում չէի կարող արտագրել
Ընկերներից ո՛չ վարժություն, ո՛չ խնդիր:

Երանի՜ թե չունենայի ես ոտքեր,
Երբ չասեին գնա ջրիր բոստանը.
Բայց, ա՛յ թե ինչ... երբ ֆուտբոլի խաղ լիներ,
Այն ժամանակ ո՞նց նստեի ես տանը:

Չէ՛, անպայման պետք է գտնել մի հնար...
Երանի՜ թե մի մեքենա լիներ նոր,
Որ իմ տեղակ դպրոց գնար, դաշտ գնար,
Իսկ ես ազատ թափառե՛ի ամեն օր:

*ՄԱՐՈ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ*

## ԽԵԼՈՔ ՏՂԱՆ

*— Մայրիկ, ես խելոք եմ, չէ՞.—ասաց մի օր Վահանիկը:—Տեսնո՞ւմ ես, թույլ չեմ տալիս, որ մի բանը հինգերորդ անգամ ինձ զգուշացնես, անմիջապես կատարում եմ:*

## ԱՐՏԱԿԻ ԽՈՐՀՈՒՐԴԸ

*Ա՜խ, Արտակ, ա՜խ, տղաս, ամեն անգամ քո մասին գանգատ լսելիս, սրտիցս արյուն է կաթում:*

*— Դու էլ յոդ քսիր, տատիկ, իսկույն կկտրվի,—խորհուրդ տվեց Արտակը:*

*Նկ. ՍԵՅՐԱՆ ԽԱԹԼԱՄԱՋՅԱՆԻ*

## ՉԵՄ ՆԱՅԻ

*— Մայրի՛կ, ինձ էլ տարեք կինո, ես էլ եմ ուզում գալ.—խնդրեց Սողակնիկը, երբ հայրիկն ու մայրիկը պատրաստվում էին կինո գնալու:*

*— Ո՛չ, աղջիկս, չի կարելի: Այդ նկարը փոքրիկների համար չէ:*

*— Ոչինչ, թող գամ, չեմ նայի:*

Նկ. ՊԵՏՐՈՍ ՄԱԼԱՅԱՆԻ



# ՎԵՃ ԷԼԵԿՏՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*(պատմվածք-հանելուկ)*

Վաղ առավոտ էր։ Գիշերային հերթափոխությունից հետո, տրամվայի պարկի մոտ գտնվող թերթի ցուցանակի առջև հավաքվել էին մի խումբ երիտասարդ բանվորներ։ Նրանք անձայն կարդում էին քաղաքային թերթի նոր համարը։

Հանկարծ էլեկտրոմոնտյոր Աշոտ Լուսյանը բարձր ծիծաղելով ասաց.

— Ա՛յ թե գրում են, հա՜։

— Մի՛ խանգարիր. սպասիր,— ասաց իր ընկերոջը վերանորոգման ցեխի խառատ Բաբկեն Խաչիկյանը, շարունակելով կարդալ։

Զանցած մի քանի րոպե. արդեն ծիծաղում էին բոլորը. և՛ Լուսյանը, և՛ Խաչիկյանը, և՛ Վահե Ասոյանը, որը վերջերս էր ավարտել արհեստագործական ուսումնարանը և աշխատում էր որպես մոնտյորի աշակերտ։

— Այո՛, ծիծաղելի է... Ինչպե՞ս է գրված. «Ընդունող հանձնաժողովի նախագահը միացրեց անջատիչը, և հոսանքը դանդաղ սկսեց շարժվել էլեկտրալարերի միջով»։

— Գուցե կրիայի արագությամբ...

— Հա՛, հա՛, հա՛։

— Իսկ գուցե խխունջի արագությամբ։

— Չգիտես՝ հարցրու։

Տղաները ծիծաղում էին էլեկտրականությունից չհասկացող հոդվածագրի վրա, որը գրել էր տրամվայի նոր էլեկտրական ենթակայանի մասին։

Արդեն ընկերները տուն էին



ուզում գնալ, երբ հանկարծ Լուսյանը մտածկոտ դեմք ընդունելով կանգնեցրեց նրանց։

— Սպասեցե՛ք, ընկերնե՛ր։ Այստեղ ինչ-որ մի բան կա։ Ո՞վ կարող է ասել, ինչպիսի՞ արագությամբ է անցնում էլեկտրահոսանքը լարերի միջով։

Ասոյանը զարմացավ, բայց աշխույժ պատասխանեց.

— Դա բոլորը գիտեն. լույսի արագությամբ՝ երեք հարյուր հազար կիլոմետր մեկ վայրկյանում։

— Ճի՛շտ է, բայց ո՛չ այնքան։

— Ինչպե՛ս թե։

Ահա թե ինչպես. վերցնենք ջրատար խողովակը։ Եթե բաց անենք ծորակը, ջուրը կսկսի հոսել միանգամից ամբողջ խողովակով, բայց ջրի այն մասը, որ նոր է սկիզբ առնում ջրամբարից, մեզ կհասնի բավականին ուշ։ Հասկանալի՞ է։ Այդպես էլ էլեկտրական հոսանքը։

Տղաները լուռ մտածում էին Ասոյանի բերած օրինակի վրա։

— Ըստ երևույթին՝ ճիշտ է,— ասաց Խաչիկյանը,— դուրս է գալիս, որ մենք իզուր էինք ծիծաղում հոդվածագրի վրա։

— Ո՛չ, իզուր չէր։ Նա գրել է. «Հոսանքը դանդաղ սկսեց հոսել էլեկտրական լարերի միջով»։ Այնտեղ ասված չէ, որ լարերի միջով դանդաղ սկսեցին հոսել հոսանքի առանձին մասնիկները, էլեկտրոնները։ Այնպես որ, էլեկտրական հոսանքը տարածվում է մի ակնթարթում, ինչպես ասաց Վահե Ասոյանը, լույսի արագությամբ, այսինքն երեք հարյուր հազար կմ մեկ վայրկյանում։

Զավեն Բարյանը, որ մինչ այդ չէր մասնակցում տղաների խոսակցությանը, կոկորդը մաքրելով, ոչ այնքան վճռական, ասաց.

— Ինչպե՞ս կարող է, տղաներ։ Եթե փոփոխական հոսանք է, ապա էլեկտրոնները ոչ մի տեղ չեն գնում, այլ միայն տատանվում են, պահպանելով իրենց միջին դրությունը, ինչպես ասված է գրքում. նրանց շարժման

արագությունը հավասար է զրոյի: Մի՞թե ճիշտ չեմ ասում:

— Ապրես, թեորիան լավ գիտես, գովում եմ, բայց մեզ մոտ տրամվայներն աշխատում են հաստատուն հոսանքով,— ընկերոջ ուսին խփելով, հայտնեց Աշոտ Լուսյանը:

Զավեն Բարյանը անհարմար զգալով, կարմրեց:

— Ուրեմն՝ եթե մեր դատողությունները էլեկտրական հոսանքի արագության մասին հանրագումարի բերենք, ապա...— հանդիսավոր կերպով սկսեց Աշոտ Լուսյանը:

Այդ նույն միջոցին հնչեց էլեկտրական զանգը: Բոլորը շուռ եկան: Պարկի բաց դարբասներից դուրս էր գալիս այդ օրվա առաջին տրամվայը:

Վագոնավարը սեղմեց արգելակները: Տրամվայը կանգ առավ: Լուսամուտից երևում էր ավագ վագոնավար Վարդան Հակոբյանի ժպտացող և բարեհամբույր դեմքը: Տղաները շատ սիրալիր բարևեցին նրան:

— Նստեցե՛ք, քամու արագությամբ ձեզ տեղ հասցնեմ: Այսօր առաջինն եմ դուրս գալիս,— ուրախ բացականչեց Վարդանը:

— Ի՞նչ եք կանգնել, կարծես միտինգի եք հավաքվել:

Տղաները բարձրանալով տրամվայ, խմբովին դիմեցին Վարդան Հակոբյանին և պատմեցին տեղի ունեցած վեճի մասին:

— Ի՞նչ ասեմ, դուք շատ ճիշտ եք դատում, երևում է ձեզ շատ լավ են սովորեցրել:

Լուսյանը չհամբերելով, աշխույժ աչքերը հառեց Հակոբյանի վրա.

— Իսկ ձեր կարծիքով ինչպիսի՞ արագությամբ է հոսում էլեկտրական հոսանքը տրամվայի լարերի միջով:

Վարդան Հակոբյանը կկոցած աչքերով նայեց Աշոտին.

— Ա՜խ, դու, թռչնակս, ի՞նչ է, քննությա՞ն ես ենթարկում ինձ, շատ բարի, թող քո ասածը լինի: Հիմա լսեք բոլորդ: Էլեկտրական հոսանքը, որ տարածվում է այս լարերի միջով, իմ իրավունքի տակ է գտնվում: Ցանկանամ՝ կշարժվի շատ դանդաղ, ուզենամ՝ կվազի արագ:

Զարմանքից տղաների բերանը բաց էր մնացել:

Վարդանը պտտեցրեց հսկիչ բռնակը, և տրամվայը սկսեց արագ շարժվել:

— Պատասխանեցի՞ քո տված հարցին, թռչնակս, ինչու՞ այսպես պատասխանեցի, ճի՞շտ եմ ես, թե ոչ, առաջարկում եմ մտածել բոլորիդ:

**Երեխաներ, դուք էլ մտածեք և ձեր կարծիքը գրեք մեզ: Ո՞վ էր իրավացի:**

*Փոխադրեց՝ Ե. ԱՌԱՔԵԼՅԱՆ*

# Երկաթ՝ արյան մեջ



*Մարդու մարմնի մեջ կա քսաներկու տարրերի միացություն, դրանցից քսանը մետաղներ են՝ կալցիում, կալիում, նատրիում, մագնեզիում, պղինձ, ցինկ, ալյումին և այլն:*

*Այդ տարրերի հետ միասին կա նաև երկաթ, որը այնքան էլ շատ չէ, ընդամենը 3—5 գրամ: Բայց այդ քիչ քանակությունն էլ շատ կարևոր դեր է խաղում մեր կյանքում:*

*Հայտնի է, որ մարդը չի կարող ապրել առանց թթվածնի: Թթվածինը թոքերից անցնում է արյան մեջ և ապա տարածվում ամբողջ մարմնով մեկ: Արյունը թթվածինը տալիս է մկաններին և տանում բջիջներում առաջացած ածխաթթու գազը: Մտնելով թոքերը, արյունը մաքրվում է ածխաթթվից, հագենում թթվածնով և նորից գնում դեպի մարմնի հյուսվածքները, իսկ ածխաթթու գազը մենք արտաշնչում ենք:*

*Ահա ինչպիսի կարևոր աշխատանք է կատարում մեր արյունը:*

*Իսկ ինչի՞ց է, որ մեր արյունը կարմիր է:*

*Արյունը կարմիր է, որովհետև նրա մեջ երկաթ կա: Նա մտնում է հեմոգլոբինի բարդ սպիտակուցային նյութի կազմի մեջ:*

*Դուք հաճախ տեսած կլինեք կարմրավուն թաղանթով՝ ժանգով պատված երկաթ: Ժանգը երկաթի միացությունն է թթվածնի հետ:*

*Հեմոգլոբինի մեջ եղած երկաթը նույնպես միանում է թթվածնի հետ: Դա կատարվում է այն վայրկյանների ընթացքում, երբ արյունը հոսում է թոքերում ճյուղավորված մազանոթների միջով: Իսկ մկաններում և ներքին օրգաններում նույնքան արագ տեղի է ունենում ածխաթթվի և հեմոգլոբինի մեջ պարունակվող երկաթի միացություն:*

*Ահա թե ինչու սրտից և թոքերից զարկերակներով դեպի հյուսվածքները հոսող արյունը ալ կարմիր է, իսկ դեպի սիրտը և թոքերը երակներով հոսող արյունը ավելի մուգ:*

*Մարդ ամեն օր սննդի հետ 60—100 միլիգրամ երկաթ է ընդունում: Այն գտնվում է մսի և բույսերի մեջ: Հատկապես մեծ քանակությամբ երկաթ է պարունակում խնձորը:*



# Տաճարը ծովի վրա

Գարնանը, երբ հորդառատ անձրևներ են տեղում, աշխարհի ամենամեծ գետերից մեկը՝ Նեղոսը, այնպես ջրառատ է դառնում, որ դուրս է գալիս իր ափերից: Նրա կանաչավուն ջրերը ողողում են հսկայական տարածություններ, հաճախ մեծ աղետներ պատճառում մոտակա գյուղերին:

Բայց շուտով վրա է հասնում տոթ, խիստ շոգ ամառը: Նեղոս գետի ջրերը պակասում են, այդ ժամանակ էլ արդեն տեղի բնակչությունը սկսում է տառապել ջրի պակասությունից: Կիզիչ արևի ճառագայթներից հողը չորանում է, ճաքճքում: Ջուր չլինելու հետևանքով հսկայական տարածություններ մնում են անմշակ:

Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի կառավարությունը, հաշվի առնելով ժողովրդի պահանջները, որոշեց կառուցել հսկայական ջրամբար՝ Ասուանի ծովը:

Այս ջրամբարի կառուցումը կըկանխի գարնանային ջրհեղեղները, իսկ ամռանը առատ ջուր կըմատակարարի շրջակա հողատարածություններին: Այդտեղ կկառուցվեն նաև հզոր հիդրոէլեկտրակայաններ:

Այն վայրը, որտեղ մի քանի տարի հետո կողողի արհեստական Ասուանի ծովը, գտնվում է մարդկության հնագույն կուլտուրայի, ճարտարապետության հիասքանչ գլուխ-գործոցներից մեկը՝ Ռամզես 2-ի տաճարը, որի բարձրությունը հասնում է՝ 33 մետրի, լայնությունը՝ 38-ի և երկարությունը՝ 63 մետրի:

Տաճարը զարմանալի վարպետությամբ փորված է Աբու Սիմբիլյան ժայռերի մեջ, 3200 տարի առաջ: Մուտքի մոտ վեր են խոյանում 20 մետրանոց 4 քանդակներ, որոնք կարծես դիմավորում են այցելուներին: Այդ հոյակերտ շինության հզորության մասին որոշ գաղափար կազմելու համար բավական է նշել, որ տաճարի ընդհանուր կշիռը կազմում է 300 տոնն, իսկ մուտքի մոտ եղած ֆիգուրներից յուրաքանչյուրի քիթը՝ 98 սանտիմետր է, ականջը՝ մեկ մետր, աչքը՝ 84 սանտիմետր:

Եվահա արհեստական ջրամբարի՝ Ասուանի ծովի ջրերը կըողողեն հենց այն վայրը, որտեղ խոյանում է մարդկային ստեղծագործության այդ հազվագյուտ գեղեցիկ նմուշը: Տաճարը կմնա ջրի տակ: Ինչպե՞ս փրկել այն:

Այս հարցը զբաղեցնում էր ոչ միայն Միացյալ Արաբական ռեսպուբլիկայի կառավարությանը, այլև բազմաթիվ ազգությունների առաջավոր մտքի ներկայացուցիչներին:

Այդ կապակցությամբ արվել են բազմաթիվ առաջարկություններ, որոնցի՞ց ՅՈՒՆԵՍԿՈ-ի էքսպերտները ընտրել են իտալացի ինժեներ՝ Լոդիլիանիի, պրոֆեսորներ՝ Կոլոնժետտիի ու Մորանդիի, խիզախ ու հետաքրքիր նախագիծը:

Նրանք առաջարկում են միմիայն ճարտարապետական այդ անսամբլը բարձրացնել 62 մետր: Այդ ուղղությամբ այժմ սկսվել են առաջին աշխատանքները. տաճարի առաջ փորվելու են խըրամներ, գործի են դրվելու բազմաթիվ փորող մեքենաներ: Շինարարները առաջին հերթին կըկտրեն տաճարին հարող քարաժայռերը: Ազատվելով քարե պատյանից, տաճարը ընդգրկվելու է բետոնե հզոր գոտեկապով: 300 հզոր հիդրավլիկ ամբարձիչներ սանտիմետր առ սանտիմետր կսկսեն բարձրացնել «բետոնե վանդակը»:

Նախատեսված է և կոնկրետ միջոցառումներ են մշակված պահպանելու տաճարում եղած բոլոր արձանները, որմնանկարները, և հնագարյան արվեստի մյուս թանկարժեք նմուշները:

Այդ հսկա ճարտարապետական անսամբլից 200 մետր հեռավորության վրա գտնվում է մի ուրիշ տաճար, որը Ռամզես 2-ը կառուցել է իր կնոջ՝ Նեֆերտարիի հիշատակին:

Այդ տաճարը, որն այնքան էլ մեծ չէ, ևս կտեղափոխվի նույն բարձրության վրա: Երկու տաճարների բարձրացման աշխատանքները նախատեսված են ավարտել 70 ամսվա ընթացքում: Համաշխարհային տեխնիկայի պատմության մեջ դեռևս չտեսնված այս աշխատանքների վրա կծախսվի մոտավորապես՝ 25 միլիարդ ֆրանկ:

Այդ ծախսերը բաշխվելու են ՅՈՒՆԵՍԿՈ-ի մեջ մտնող 81 երկրների վրա:

Մի քանի տարի հետո, այստեղ կծփա Ասուանի ծովը, որի վրա վեհորեն կիշխի հոյաշուք այդ հուշարձանը:



# ՈՒՂՏԻ ՎՐԵԺԸ

ՍԵՆՈ ԲԱԼԱՅԱՆ

Գարնանային մի պայծառ առավոտ, բազմերանգ գորգերով զարդարված քոչվորական ուղտերի քարավանը՝ զանգակների անուշ ղողանջով քայլում էր դեպի յայլա: Քարավանի առջևից՝ գլուխը բարձր, մռութը վեր ցցած, ամբողջովին զանգակներով պատած, հպարտ ու հաղթական քայլում էր Նառը:

Քարավանի կողքից գնում էր ծեր ուղտապանը՝ ծխամորճը բերնին:

Մենք, մի խումբ երեխաներ, հևիհև վազելով հետևում էինք նրանց, երբ աննկատելի կերպով հասանք գյուղի վերջին տանը... Ամենից շատ մեզ հետաքրքրում էր մայր ուղտի կողքից վազող ձագը, որն ամեն կերպ աշխատում էր մորից ետ չմնալ:

Մեզանից շատերը փորձեցին բռնել նրան ու փաթաթվել կեռ պարանոցով, շոյել գեղեցիկ ու վեր ցցված գլուխը: Բայց իզուր: Մեզ սաստում էին ծեր ուղտապանը և, առանձնապես, մայր ուղտը, որ մերթ ընդ մերթ գլուխը երկարում էր դեպի մեզ ու ահավոր ձայնով նռռում... Դրանով ասես սաստում էր մեզ, որ չմոտենանք, չնեղացնենք իր ձագուկին: Իսկ մենք ավելի էինք հրճվում ու ձգտում մոտենալ նրանց:

Գյուղի ծայրին, փոքրիկ բացատում քարավանը կանգ առավ: Կանգ առավ նաև մեր խումբը:

Գլխին չալմա փաթաթած ուղտապանը մոտեցավ Նառին և «Ե՜խ, ե՜խ...» արեց:

Մենք տեսանք, թե ինչպես այդ հսկա կենդանին, տիրոջ հրամանին հլու, ինչ որ զարմուրելի ձայներ արձակելով, ծնկաչոք եղավ, ապա մեկնվեց գետնին: Մյուս ուղտերը հետևեցին նրան: Մի քանի րոպեից հետո բացատի հարթության վրա գոյացավ մի շրջան, որը հիշեցնում էր կողք-կողքի շարված քարերի մի տողան:

Երբ տեսանք, որ ուղտապանը մեզ վրա ոչ մի ուշադրություն չի դարձնում, մենք՝ ավելի սրտապնդվեցինք: Նկատելով, որ մայր ուղտն էլ նստած է, բոլորս նետվեցինք դեպի ձագը, սակայն ուղտապանի ձեռքի վճռական շարժումը բավական էր, որ մենք խրտնած ուղտերի պես դես ու դեն փախչեինք:

Երբ մի քիչ հեռացանք, նորից համարձակվեցինք իրար մոտ և շարունակեցինք մեր անմեղ խաղը: Ուղտապանը ձեռքի շարժումով մեզ իր մոտ կանչեց, սակայն մենք սիրտ չարեցինք մոտենալ: Այս տեսնելով, նա իր քայլերն ուղղեց դեպի դիմացի դուռը և երկու անգամ բախեց: Շեմքին երևաց գյուղի հանդապահ բեռի Կարոն: Ուղտապանին լսելուց հետո նա տուն մտավ, դուրս բերեց մի մեծ, զանգավոր թաղիք, փռեց ծառի ստվերում: Նրանք ծալապատիկ նստեցին, սկսեցին զրուցել ու մերթ-մերթ նայել մեր կողմը:

Օգտվելով ուղտապանի բացակայությունից, մենք հետզհետե մոտեցանք իրար ու հեռագրալարի վրա շարված սարյակների նման կուչ եկանք բեռի Կարոյի տան պատի տակ, աչքներս տնկած մեր սիրած փոքրիկ ուղտին, որն անընդհատ պտույտներ էր կատարում մոր շուրջը:

Սարոն, որ մեր մեջ ամենից համարձակն էր, առաջացավ ու ձեռքը պարզեց, որ բռնի փոքրիկ ուղտի պարանոցը, բայց հենց այդ պահին մայր ուղտը գլուխը պարզեց դեպի Սարոն և կատաղի մռնչոցով թքեց նրա երեսին: Սարոն շանթահար ետ թռավ ու սկսեց փախչել դեպի գյուղամեջ: Մենք մի կուշտ ծիծաղեցինք Սարոյի վրա... Գուցե այդպես երկար ամփեինք, եթե չլսեինք բեռի Կարոյի հազը: Բոլորս դարձանք նրա կողմը:

Ծեր ուղտապանը շարունակում էր իր զրույցը և խոսելու ժամանակ երբեմն ձեռքը պարզում շարքով նստած ուղտերի կողմը, երբեմն էլ մատնացույց անում իր ձախ աչքը... Ծերերի զրույցը երկար տևեց: Բայց մենք անսպառ հետաքրքրությամբ ու ակնածանքով նայում էինք մայր ուղտին, որն այնպես խիստ պատժեց Սարոյին:

Վերջապես ուղտապանն ու բեռի Կարոն ոտքի ելան: Ուղտապանը հրաժեշտ տվեց ու քայլերն ուղղեց մեր կողմը, իսկ մենք չարաճճի ուլիկների նման ցատկոտելով փախանք տարբեր կողմեր:

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ



Մինչև մենք նորից կհավաքվեինք, ուղտերի քարավանն արդեն շարժվում էր: Փոքրիկ ուղտը կրկին քայլում էր մոր կողքից, մի տեսակ անխախտ ու համարձակ և կարծես չէր էլ մտահոգվում մեր բացակայություններից ու վազվզոցից: Լսվում էր քարավանի զանգակների հեզահնչուն հեռացող ձայնը, և հեռվում մարող նրա հաճելի ղողանջը:

Վշտացած տուն էինք վերադառնում, երբ մեր դիմաց ելավ քեռի Կարոն և մեզ կանչեց իր մոտ:

Մոտեցանք:

— Կուզե՞ք լսել, թե ինչ պատմեց ուղտապան Ջալիլը:

Մենք իսկույն հավաքվեցինք ծերունու շուրջը, և նա մեզ իր թևերի տակ առնելով, սկսեց պատմել:

«Ուղտն ապրում է երեսունհինգից մինչև քառասուն տարի: Խիստ որդեսեր է, չի ներում նրանց, ովքեր վիրավորում են իրեն ու իր ձագերին:

Ես փոքր էի, երբ հայրս ինձ նստեցնում էր նաև ուղտին ու յայլա տանում: Մի անգամ, երբ հայրս քարավանին հանգիստ տվեց, ուզեցի նստել ուղտերից մեկի ձագուկին, որ մորից հեռու արածում էր: Ոտքս դեռ չէի բարձրացրել, երբ տեսա, որ մայր ուղտը դեպի ինձ է վազում: Անմիջապես թողեցի ու փախա: Սակայն նա ինձ հետապնդեց այնքան ժամանակ, մինչև հայրս վրա հասավ և սաստեց նրան: Անցավ մի քանի օր: Արդեն սարումն էինք: Ես, իհարկե, չէի մոռացել մտադրությունս և որոշել էի անպայման հեծնել ուղտի ձագին:

Գնացի դեպի ուղտերը, որոնք վրանից ոչ հեռու արածում էին: Ավելի սրտապնդվեցի, երբ տեսա, որ հայրս հրացանը վերցրած՝ դեպի ոչխարներն էր գնում: Մոտեցա ձագուկին և արագ թռա նրա սապատավոր մեջքին: Ուզում էի շտկվել, երբ զգացի, որ մեկը ինձ թափով վերցրեց ու կատաղի մռնչոցով գետնով տվեց: Ես գիտակցությունս կորցրեցի և երբ ուշքի եկա, տեսա շուրջս խմբված հարազատներիս: Ոմանք լալիս էին, ոմանք արդեն արտասուքներն էին սրբում: Ինձնից մի փոքր հեռու ընկած էր մայր ուղտը, որ փչում էր վերջին շունչը: Հայրս, որ վրաններից այնքան էլ չէր հեռացել, տեսնելով ինձ ուղտի ատամների մեջ, մի գնդակով նրան տապալել էր գետին...»

Հանդապահ Կարոն ուղտապանի սրտառուչ պատմությունն ավարտեց, մեծ վիշտ պատճառելով մեզ: Մայրն իրեն զոհել էր որդու պատճառով:

— Հիմա հասկանալի՞ է, — ասաց հանդապահը, — թե ուղտապանն ինչու թույլ չտվեց ձեզ, որ մոտենաք ուղտի ձագին: Մայրը, — ասաց նա, — կզազազի ու մեկն ու մեկին կվնասի: Ճիշտ է, ուղտ է, բայց չէ՞ որ մայր է, սիրում է իր ձագուկին ու նրան պաշտպանելու համար պատրաստ է ամեն ինչ անելու:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

# ՋՈՒՆԳԼԻՆԵՐԻ ՏՂԱՆ

Բ. ՍԵՐԳԵՅԵՎ

*(Բիոլոգիական գիտությունների թեկնածու)*

Սրանից հինգ տարի առաջ, Հնդկաստանի Ագրի քաղաքի մոտերքը, ջունգլիում գտնվեց մի տղա: Երեխան հիվանդ էր և հյուծված: Նրան տեղափոխեցին հիվանդանոց: Տղան, որին Ռամու անվանեցին, ոչ խոսել էր իմանում և ոչ էլ քայլել: Ըստ երևույթին, այդ երեխան ընկել էր ջունգլիները դեռևս բոլորովին փոքր հասակում և ապրել այնտեղ մի քանի տարի: Ռամուն այնտեղ մարդկային խոսք լսելու որևէ առիթ չէր ունեցել:

Ինչպես ջունգլիների բոլոր բնակիչները, Ռամուն էլ շատ էր վախենում մարդկանցից: Երբ նրան հիվանդանոց էին տանում, նա կծոտում էր, ճանկռում, ճչում, ջանալով դուրս պրծնել:

Առաջին օրերին երեխան վախենում էր նաև լույսից: Չէ՞ որ ջունգլիները խիտ են ու մթին: Ռամուն ձգտում էր սողալով քաշվել մահճակալի կամ սեղանի տակ, թաքնվել մութ անկյունում, լույսից ու մարդկանցից հեռու: Հարկ եղավ նրա մահճակալը ցանցի մեջ առնել: Կուչ եկավ և համարյա կծիկ դարձած պառկեց մահճակալի վրա ու մի քիչ խաղաղվեց: Բայց հենց որ



նրան մենակ թողեցին, անմիջապես հարձակվեց ցանցի վրա և


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ՀԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Ռ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41

Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2-11-83, 2-39-06:

ՎՖ 01507: Պատվեր 396: Տպաքանակ՝ 9000: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 31/III 1961 թ.: ՀՍՍՌ կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91: Գինը 20 կ.:




սկսեց կրծել ու պատռել՝ ջանալով ազատվել: Նա անվստահությամբ էր վերաբերվում նաև բոլոր այն առարկաներին, որոնք գոյություն չունեին ջունգլիներում: Երբ նրա համար մահճակալի վրա խաղալիքներ դարսեցին, նա անմիջապես վախեցած ետ քաշվեց և հեռվից սկսեց հոտոտել:

Ռամուի հյուծված օրգանիզմը մեծ պահանջ ուներ ուժեղ սննդի, բայց նա հրաժարվեց որևէ բան ուտել: Վճռականապես մերժեց և՛ անուշեղենները, և՛ պտուղները, և՛ խոհանոցային ամենաընտիր կերակուրները: Իսկ երբ փորձում էին բռնի կերակրել, նա բերնից թափում էր: Հարկ եղավ նրան կերակրել միայն հում մսով:

Երեխան ճանաչում և լավ հիշում էր այն մարդուն, որը առաջին անգամ հում միս բերեց: Ռամուն նրանից քիչ էր վախենում: Այսպիսով սկսվեց տղայի բարեկամական առաջին կապը այդ մարդու հետ:

Լիովին հասկանալի է, որ Ռամուն չգիտեր գործածել ո՛չ պատառաքաղ և ո՛չ էլ գդալ: Նա նույնիսկ չէր կարող խմել բաժակից: Նրան ջուր էին տալիս հատուկ պատրաստված ամանով: Իսկ եթե կաթը կամ թեյը լցնում էին պնակի մեջ, նա լակում էր ճիշտ այնպես, ինչպես շնիկները:

Արդյոք ի՞նչ ձևով և ի՞նչ հանգամանքներում էր նա ընկել ջունգլիները, ինչպե՞ս էր հաջողվել կենդանի մնալ: Գիտնականներին հայտնի են դեպքեր, երբ գայլը, կապիկը, ընձառյուծը կամ արջը փոխարինել են երեխաների ծնողներին: Ավելի հաճախ երեխաները գտնվել են գայլերի մոտ: Այս երևույթը բացատրում են նրանով, որ գայլամայրը կորցնելով իր ձագուկներին կամ նրանցից մի քանիսին, իր ընտանեկան հարկում սիրով ընդունում է օտար գայլուկներին և նույնիսկ բոլորովին ուրիշ ցեղի պատկանող կենդանիների ձագերին: Հնդկաստանում, օրինակ, պատահել են այնպիսի դեպքեր, որ ձագերին կորցրած գայլամայրերը մոտակա գյուղերից գողացել են օրորոցի մանուկներ և ծնողական խնամք տարել նրանց հանդեպ՝ իրենց որջերում:

Շատ հավանական է, որ Ռամուի ջունգլիներում «որդեգրողները» գայլերը լինեն: Այս մասին է վկայում տղայի վարքագիծը:

Մի անգամ Ռամուին տարել էին զբոսանքի: Սկզբում նա որևէ բանի նկատմամբ հետաքրքրություն չցուցաբերեց: Բայց հանկարծ պարտեզի ծառուղում երևացին երկու թափառական շուն, որոնք դանդաղ առաջ էին գալիս: Նրանց տեսնելով, Ռամուն հանկարծ փոխվեց, աչքերը լցվեցին ուրախությամբ: Նա սողալով մոտեցավ շներին և երկար ժամանակ խաղաց նրանց հետ: Հավանական է, շները նրան հիշեցնել տվին այն գայլի մասին, որը նրան ընդունել էր, հովանավորել՝ որպես հարազատի: Այս ենթադրությունը ստուգելու համար Ռամուին տարան կենդանաբանական այգի: Կենդանիներից և ոչ մեկը նրա ուշադրությունը չգրավեց՝ բացի գայլերից, որոնց վանդակի մոտից նա չէր ուզում հեռանալ:

Ինչպիսի՞ն կլինի փոքրիկ Ռամուն ապագայում: Դժվար է այս հարցին նախապես պատասխանել: Բանն այն է, որ մանկան զարգացման համար շատ մեծ նշանակություն ունեն նրա կյանքի առաջին տարիները: Այդ տարիներին է, որ մանկան օրգանիզմում կատարվում է բուռն զարգացում: Երեխան սովորում է ոտքի կանգնել և քայլել, հասկանալ մարդկային լեզուն և խոսել, յուրացնել մարդկային սովորությունները: Այս բոլորի հետ միասին աճում և զարգանում է մանկան գանգուղեղը:

Ռամուի համար կյանքի այսքան արժեքավոր շրջանը անվերադարձ կերպով կորել է: Դժվար է ասել, թե արդյո՞ք նա կկարողանա կորցրածը վերականգնել:

Պատահականության բերումով կենդանիների պահած երեխաները սովորաբար տհաս են մնում: Գիտնականներին հայտնի է նման դժբախտներից մեկի պատմությունը: Նա ապրել է մինչև խոր ծերություն, բայց և այնպես չի կարողացել լիակատար անդամը դառնալ մարդկային հասարակության: Նա չի կարողացել ոչ աշխատանքի վարժվել և ոչ էլ մարդկանց շրջանում ապրել, ամբողջ կյանքը անցկացրել է հիվանդանոցում: Նույնպես գայլերի որջում հասակ առած երկու աղջիկներ՝ Ամլան ու Կամլան, մեռան հիվանդանոց տեղափոխվելուց մի քանի տարի հետո, առանց նշանակալից առաջադիմության:

Ռամուն իր նախորդներից բախտավոր է: Նրա դաստիարակությամբ զբաղվում են հմուտ բժիշկներ՝ փորձառու և հոգեբան մանկավարժներ: Հինգ տարվա ընթացքում նրա մեջ զգալի փոփոխություն է կատարվել: Լավացել է առողջությունը՝ չի վախենում մարդկանցից, սովորել է եփած կերակուրներ ուտել, սիրում է խաղալիքներ և մեծ բավականությամբ խաղում է երեխաների հետ: Ռամուն արդեն գիտի իր անունը, սկսել է հասկանալ մարդկային լեզուն, սովորել է որոշ բառեր, ենթարկվում է կարգապահության:

Հուսանք, որ Ռամուի դաստիարակների ջանքերը պիտի պսակվեն կատարյալ հաջողությամբ: Եթե մեր հույսերը իրականություն դառնան, այն ժամանակ Ռամուն պատմելու շատ բաներ կունենա՝ ջունգլիներում իր ապրած կյանքի, իրեն «որդեգրող» ծնողների և առհասարակ ջունգլիների բնակիչների մասին:

*Ռուսերենից թարգմանեց՝*

*ԱՐՈ ԱՐՈՅԱՆ*

20 կ.:



«Մեր գյուղը»
ԶԱՎԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ
(Շամշադինի շրջան, Նավուր գյուղ, 4-րդ դասարան)

«Մեր քաղաքում նոր շենք են կառուցում»
ՀԱԿՈԲ ՄԱՐԿՈՍՅԱՆ
(Երևան, 6 տարեկան)